# ՊԻՈՆԵՐ



ՀՆՉՈՒՄ ԱՀԱ ԿԱՆՉԸ ԴՊՐՈՑԻ

ԱՇԽԱՏԱՆՔԻ ԴՊՐՈՑ





№ 7 8



# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲԱՅԻՆ ԽԱՂԵՐ

Ձմեռը մտնում է։ Պիոներական կոլեկտիվ-աշխատանքները հետզհետե կենտրոնանում են ակում-բում, դպրոցում, խրճիթ-ընթերցարանում։ Կոլեկտիվի հավաքույթներում չպետք է զբաղվել միայն զրույցներով կամ անվերջ կարմիր հեքիաթներով, հարկավոր է նաև խաղալ, ծիծաղել, երգել, պարել։

Խաղը կազմակերպելիս, պետք է ինկատի ունենալ հետևյալ հիմնական պայմանները։

1. Ակումբը, կամ այն ազատ սենյակը, որտեղ խաղում են պետք է օդը մաքուր լինի, պատուհանները անպայման բաց։

2. Փոշի չբարձրացնելու համար, պետք է հատա-ը ջրել, իսկ յեթե տախտակած է հարկավոր է թաց որով սրբել։

3. Խաղի ընթացքում անհրաժեշտ է ամեն կերպ աշխատել աղմուկ, չբարձրացնել։

## ԳՏՆԵԼ ՄՏԱԾՎԱԾ ԹԻՎԸ

Խաղին մասնակցում են առանձին օղակներ, կամ ամբողջ կոլլեկտիվը։

Պիոներները լուռ նստում են իրար կողքի։ Պիոներներից մեկը, առանց ձայն հանելու, բերանը բաց ու խուփ անելով պետք է թվեր ասի։

Յեթե ցանկանում է միավոր թիվ ասել, օրինակ 5-պետք է բերանը առանց ընդմիջումի հինգ անգամ բաց ու խուփ անի։ Յեթե ցանկանում է 12 ասել, պետք է բերանը մեկ անգամ բաց անի ու խփի, ապա մի փոքր դադար տալուց հետո, պետք է իրար հետևից յերկու անգամ բերանը բաց ու խուփ անի։ Յեթե ցանկանում է 100-ով թիվ ասել, օրինակ՝ 116, պիտի մեկ անգամ բերանը բաց անի ու խփի, ապա քիչ դադար, հետո նորից մեկ անգամ բերանը պետք է բաց անի ու խփի ու տա փոքր դադար։ Յերրորդ անգամ պետք է բերանը իրար հետևից վեց անգամ բաց անի ու խփի. Յերեք թիվ ասելուց հետո, պիոներները հերթով փոխում են իրենց դերերը։

## ՀԱՐՅՈՒՐ ՀԱՄԱՐԻՐ «0»-Ն ԲԱՑ ԹՈՂ

Խաղացողները նստում են շրջան և սկսում են հա-մարել։ Ում վոր հանդիպում է 0-ով թիվ նա բերանը կլոր բաց անի։ Ով սխալվում է դուր-լիս խաղից։

## ԱՐՀԵՍՏՆԵՐ

Խաղացողները բաժանվում են յերկու հ խմբերի։ Խմբերից մեկը հեռանում է սենյակի բոշում մի վորևե արհեստ։ Արհեստի գլխավոր ձ անդամների մեջ բաժանելով, գալիս են մյուս մոտ և համապատասխան շարժումներով ներկա են արհեստը։ Յերբ հակառակորդ խումբը հին յում գտավ արհեստը, դերերը փոխում են։ Յե հայտնում են արհեստը և գնում նորը վորոշել

## ԱՆԱՆՑԱՆԵԼԻ ՇՐՋԱՆՆԵՐ

Հատակի վրա գծում են շրջաններ, իրա քայլ հեռու։ Խաղացողները կանգնում են զու իրար ձեռք բռնած։ Խաղացողներից մի քանի են գալիս խաղից և սկսում են յերգել պիոներակ եև յերգ։ Իսկ զույգերը սկսում են շրջաններ քայլել։

Յերգողները մեկ-մեկ ընդհատում են յեր գը։ն ընդհատելուց հետո՝ քայլողները պետք է կանգնեն։ Այն զույգերը, վորոնք մնում են շր րի մեջ, դուրս են գալիս խաղից։

## «ԳՈՒՏ»

Այս խաղին կարող են մասնակցել առան ղակներ, կամ կոլլեկտիվը։ Խաղացողները բաժան զույգերի։ Զույգերից մեկն անցնում է սենյակի ղը, նրանցից մեկը պպզում դառնում է «պու մյուսը՝ «մայր»-ը, ձեռքը դնում է գլխին և պա «պուտ»-ի շուրջը աշխատում է վռազով կամ խփել այն խաղացողին, վորը մոտենում է և ցան է հարվածել «պուտ»-ին։

Խաղը կրկնվում է, յերբ «մայրը» հաջող վորևե մեկին խփել։ Խփվածը դառնում է «պուտ ընկերը «մայր»։



Չորրորդ տարի

Բանվոր դասակարգի պայքարում, պիոներ, պատրա՛ստ ես.







ՊԱՏԱՆԵԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՕՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ

Խմբագրության հասցեն՝ Յերևան, Աբովյան փ. № 36

№ 7—8 (9—10) ՕԳՈՍՏՈՍ — ՍԵՊՏԵՄԲԵՐ 1926 թ.

# ԼՍԻ՛Ր ՊԻՈՆԵՐ

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԴՊՐՈՑՈՒՄ

(ՀԽՍՀ Լուսժողկոմատի Սոցդաստգլխվար ընկ. Տ. Մուշեղյանի հոդվածը)

*Արդեն սկսվել է ուսումնական տարին։ Մեր կոլեկտիվ՛ների աշխատանքների բնույթն էլ պետք է փոխվի։ Այժմվանից սկսած՝ առաջին տեղը պիտի բռնի պիոներների դպրոցում կատարելիք աշխատանքը։ Վորովհետև դպրոցում, պիոները բացի իր հիմնական պիոներական կազմակերպությունից մտնում է նաև դպրոցական կազմակերպության մեջ։ Նա մասնակցում է իր խմբի դպրոցական աշխատանքներին, կողք-կողքի անկազմակերպ աշակերտների հետ։ Այստեղ է, վոր պիոներական կազմակերպությունը կարող է չկազմակերպված պատանիներին իր ազդեցության տակ վերցնել։ Այս խնդիրն է, վոր մենք պետք է լուծենք յուրաքանչյուր դպրոցական տարում։ Պիոներական կազմակերպության հիմնական խնդիրը դպրոցում, այդ պատանեկության քաղաքական-հասարակական դաստիարակությունն է։ Այս նպատակով էլ պիոներական ֆորպոստը, կամ դպրոցական կոլեկտիվը իր դպրոցական աշխատանքի ծրագրում պետք է մտցնի մի քանի խնդիրներ, վորոնք ամեն գնով պիտի աշխատի լուծել և լավ լուծել։*

*Առաջին. դպրոցում հեղափոխական տոները լավ կերպով անցկացնելու համար, պիոներները պիտի պատրաստվեն շատ առաջ. տոնի նշանակությունը և պատմությունը յուրաքանչյուր պիոներ պիտի լավ յուրացնի նախապես, վորպեսզի մյուս աշակերտներին էլ կարողանա բացատրել. տոնի առթիվ պատի լրագիրը պիտի հրատարակել շատ ճոխ բովանդակությամբ։ Տոնի օրը պիոներները իրենց մաքրությամբ, ուրախությամբ, յերգերով, յերաժշտությամբ և դրոշակներով յուրաքանչյուր չկազմակերպված պատանու մեջ պիտի ցանկություն առաջ բերեն պիոներ դառնալու։*

*Այդ օրերին պիոներների գիտակից և օրինակելի վերաբերմունքը՝ մեծ ազդեցություն կունենա բոլորի վրա։*

*Յերկրորդ. պատանեկության հասարակական քաղաքական դաստիարակության ամենալավ ձևը անմիջական հասարակական աշխատանքն է։*

*Պիոներական ֆորպոստի կամ կոլեկտիվի գործն այստեղ շատ մեծ է։ Ֆորպոստը պիտի նախորոք ուսումնասիրի իր շրջանում այն բոլոր աշխատանքները, վորոնք դպրոցը կարող է կատարել։ Դրա համար նա պետք է դիմի գյուղ-*

խորհրդին, քաղաքում՝ քաղխորհրդին, գործկոմին, գոյություն ունեցող զանազան կազմակերպություններին, ծանոթանալու համար նրանց աշխատանքների ծրագրին, կամ հենց նրանցից ըստանալու զանազան աշխատանքների պատվերներ, ապա այդ պատվերները հարկավոր է ուսումնասիրել, մշակել և զեկուցել դպրոցական խորհրդին և աշխորհրդին։

Հասարակական աշխատանք տանելիս պիոներներն առանձին ջանասիրություն պիտի ցույց տան, վորպեսզի իրենց օրինակով վարակեն մյուս աշակերտներին ևս։ Այս ձևով պիոներական կազմակերպության ազդեցությունը շատ կուժեղանա։

*Երրորդ*. աշակերտներին հասարակական աշխատանքի վարժեցնելու, նրանց մեջ քաղաքական ակտիվություն առաջ բերելու համար, դպրոցում գոյություն ունեն աշակերտական կազմակերպություններ։ Աշխորհրդի, խմբական, սեկցիոն և աշկոոպի աշխատանքների հաջող գնալուց կախված է աշակերտների հասարակական դաստիարակությունը։ Պիոներներից է կախված այս կազմակերպությունների աշխատանքների հաջողությունը։ Պիոներները պիտի ընտրվեն և այս կազմակերպություններում և իրենց կատարած աշխատանքների մասին պիտի զեկուցեն կոլեկտիվի և ֆորպոստի նիստերին։

Այս աշխատանքներն այնպես պիտի տանել, վոր մյուս աշակերտներն զգան, վոր դրանց հաջողությունը վոչ թե այս կամ այն պիոներից է կախված, այլ ամբողջ պիոներական կազմակերպությունից։

*Չորրորդ*. պիոներները դպրոցում հաճախակի պիտի կազմակերպեն յերեկույթ-ցերեկույթներ ամբողջ աշակերտության համար, վորպեսզի՝ ցույց տան պիոներական կենցաղը, կազմակերպության նպատակը։ Ավելի լավ է այդ հանդեսները կազմակերպել պիոներական-ակմբային օրերին, վորոնք այս տարվանից շատ դպրոցներում լինելու յեն, յերկու շաբաթը մեկ անգամ։

*Հինգերորդ*. պիոներական կազմակերպությունը իր ղեկավարությամբ պետք է բոլոր պիոներներին դպրոցում գործի դնի։ Բայց այդ քիչ է։ Պիոները դպրոցում պետք է լավ սովորի. այդ կողմից օրինակելի աշակերտ պետք է լինի վոչ թե հետամնաց։ Ֆորպոստն ու կոլեկտիվը պարբերաբար պիտի դիմեն ուսուցչին, դպրոցի վարիչին և տեղեկանան իրենց անդամների առաջադիմության մասին։ Թույլ պիոներին պիտի օգնեն ընկերները։ Պետք է ուշադրություն դարձնել և միջոցներ ձեռք առնել վորպեսզի աշխատանքի անընդունակ և ծույլ պիոները դասերից հետ չմնա։ Զքավոր պիոների համար կոլեկտիվ ուժերով գիրք, տետր և այլ պիտույքներ պետք է գնել, վորպեսզի նա հետ չընկնի իր ընկերներից։ Յերբ պիոներները իրենց դասերը ամենից լավ սովորեն, այդ կուժեղացնի ամբողջ կազմակերպության ազդեցությունը, իսկ մեզ հենց այդ է հարկավոր։ Ինքնահավան, վոչինչ չանող և ծույլ պիոները գցում է ամբողջ կազմակերպության վարկը։

Ահա այն կարևոր հարցերը, վորոնք պիտի գրավեն բոլորիս ուշադրությունը, յերբ արդեն սկսվել է դպրոցական տարին և մոտենում է ձմռան սեզոնը, յերբ յուրաքանչյուր պիոներ զբաղված է դպրոցական աշխատանքներով։

«Դեպի դպրոցական ծրագրված աշխատանք»-ահա մեր նշանաբանը։



Լ. ԳՈՒՄԻԼԵՎՍԿԻ

# ՍԵՎ ՋՈՐՋԻՆ



I

Ջորջին իրոք սև չէր։ Նա իր հայրենի յերկրի բոլոր յերեխաների պես սպիտակ մորթ ուներ. բայց ածխի սև մուրը ներս եր ծծվել նրա մաշկի տակ, յեվ նույնիսկ գործադուլի 9-րդ շաբթին նրա իսկական գույնը չեր բացվում։

Բայց, իհարկե, գործադուլը 9 տարի յել տեվի յեվ Ջորջին իր ընկերներից ե՛լ ավելի սպիտակի, նրանք նրան Սև Ջորջի կասեն, ինչքան սազում եր նրան այդ անունը։

Տասներկու տարեկան ժամանակը Ջորջին հազիվ եր հիշում իր իսկական անունը։ Նրա հոր անունը Ջոնատոն եր։ Նրա հայրը մեռավ հանքահորում աշխատելիս, մնալով փլվածքի տակ։ Վոչ թե դիակ, այլ միայն մսի, վոսկորների, ածխի ու արյունի մի կույտ հանեցին փլվածքի տակից։ Մինչ Ջոնատոնի կինն ու վորդին հենվում եյին նրա «դիակի» վրա, հանքատերը զզվանքով շուռ յեկավ յեվ կանչելով վերակացվին հարցրեց.

— Քանի՞ տարեկան ե յերեխան։

— Կարծեմ տասնմեկ, միստե՛ր Հարդի։

— Միենույն ե, վոչի՛նչ. յերկուշաբթի որվանից աշխատանք տվեք։ Մենք պետք ե օգնենք ընտանիքին։

— Բայց մեր օրենքի համաձայն, մենք տասներկու տարեկանից փոքրին հանքահորն իջեցնելու իրավունք չունենք։

— Բացառություն կանենք. մեռածի ընտանիքը հո առանց օգնության չե՞նք թողնի։

— Զարմանալի բարի՛ յեք, միստեր Հարդի։

Միստեր Հարդին թաշկինակը բաց արավ, քրտնած դեմքը սրբեց յեվ ձեռքը թափ տվեց՝ միթոմ ներման բարի յե, վոր չի իմանում ինչ անի։

Այսպես փոքրիկ Ջորջին բանվոր դարձավ։ Յերկուշաբթի որը դպրոց գնալու փոխարեն հանքահորն իջավ։ Ճաշի դադարի ժամանակ գնաց դպրոցի բակը, վորպեսզի ընկերներին իմաց տա, թե ինչ փոփոխություն ե կատարվել իր կյանքում։

Նա նեգրի պես սևացած եր։

Ընկերներից Ելլենը աղաղակեց.

— Ջորջին յեկավ, նա ածխահատի պես սևացել ե։ Սե՛վ Ջորջի, Սե՛վ Ջորջի, ո՞ւր եյիր. դժոխք հո չեյիր գնացել, չե՞ վոր ուսուցիչը քեզ միշտ ենտեղ ե ուղարկում։

— Յես կարծում եմ, Ե՛լլեն, վոր դժոխքն ավելի լավ կլինի. տարբերությունը միայն այն ե, վոր դժոխքը հնարովի բան ե, իսկ հանքահորն իրական ու բոլորովին մութ,—պատասխանեց Ջորջին։

— Դու հանքահորում պիտի աշխատե՞ս. բայց այդ ինչպես կլինի,—բացականչեցին յերեխաները, շրջապատելով նրան։

— Միստեր Հարդին իմ հոր պատճառով բացառություն ե արել, ուզում ե օգնել մեզ։

— Լա՛վ օգնություն ե, խոսեց շեկ Ռոբը,—դու կատ՛ակես ենտեղ, ախար ի՞նչ կարող ես անել։

— Ածխի սայլակներ եմ քարշ տալիս։

— Հա՞,—ծոր տվեց շեկլիկը գործը գիտցող մարդու ձեվով,—շաբաթական մի շիլլինգ, յերկու պենս կստանաս։ Ու մի մարդ չեղա՞վ. վոր եդ տեսակ օգնության համար միստեր Հարդիի գլուխը ջարդե՞ր։

— Մարտենսն ու Ենդրյուն, վորոնց հետ աշխատում եմ, շատ փնթփնթացին. ասում են կգա ժամանակ, վոր Միստեր Հարդիի հետ հաշվի կնստենք։ Նրանք խոստացան,—ավելացրեց նա կամաց,—իրենց աշխատավարձից 2-ական սու ավելացնել իմ ռոճիկին —հորս հիշատակին։

Դպրոցականներն յերկար ժամանակ խոսում եյին Ջորջի մասին։ Շեկլիկ Ռոբը մատ եր բարձրացրել. յեվ յերբ ուսուցիչը կոշտ կերպով հարցրեց թե ի՛նչ ես ուզում, նա չարությամբ ասաց.

— Մի՞թե միստեր Հարդին այլ կերպ չեր կարող օգնել սպանված Ջոնատոնի ընտանիքին, վոր նրա վորդուն դպրոցից վերցրին ու հանքահորն իջեցրին, ուր նույնիսկ մեծերի համար դժվար ե աշխատել։

— Ուսուցիչն աչքերը չռեց։

— Ի՞նչ ասացի՛ր,—աղաղակեց նա։

Ռոբն ուզում եր սառնասրտորեն կրկնել իր հարցը, բայց ուսուցիչն արդեն բռնոնը բարձրացրած դեպի նա վազեց։

— Լռի՛ր, դու խոր պատժված ես, քո հանդուգն հարցի համար։

— Յես առաջ ուզում եմ իմ հարցի պատասխանը ստանալ,—պնդեց Ռոբը։

Ամբողջ դասարանը քարացել եր։

Քանոնն իջավ Ռոբի մեկնած ձեռքին. նա ցավից ատամները սղմեց։ Ուսուցիչն աղաղակեց.

— Յեթե մեկել բերանդ բաց անես, վարվանից դպրոց չես գա։

Ջորջին սովորում եր ածուխի սայլակը քարշ տալ։ Այդ նրա ուժից վեր աշխատանք եր, յեվ յեթե հին ածխահատները չօգնեյին, յերեկոյան նա հազիվ թե վեր բարձրանար։ Նա ուժասպառ եր լինում ածխի փոշուց ու ծանր աշխատանքից։

Աստիճանաբար Ջորջին վարժվեց յեվ իր սեվ մորթին, յեվ հանքահորերի գարշահոտությանը յեվ ծանր սայլակներին։ Մեծ գործադուլի ժամանակ, նա արդեն լավ քարշ տվող եր։ Նրա ստացած աշխատավարձն այնքան չնչին եր, վոր մայրն ել ստիպված եր լվացք յեվ մանր մունր գործեր վերցնել, վորպեսզի մի կերպ ապրեն, սովամահ չլինեն։

Սեվ Ջորջին, ամուր կպել եր իր աշխատանքին, վորը նրան հնարավորություն եր տալիս կարտոֆիլի տեղ յերբեմն հաց առնել։ Բայց նա մյուսների հետ գործադուլ արավ, առանց ցավելու, վոր կորցնում է մի շիլլինգ 6 պենս։

II

Ութ շաբաթ հանքահորերի սեվ յերախներն եյին նայում պարապ.—խոտ դուրս յեկավ նրանց վրա...։

Ջորջին մյուսների հետ գիշերները կարտոֆիլ եր գողանում։ Ցերեկը նա կամ հերթապահ եր լինում հորերին հսկելու, կամ Ռոբի հետ անցնում եր այն, ինչ վոր այդ մի տարին առանց նրան սովորել եյին դպրոցում։

Բայց գիրքը դողում եր նրա ձեռքին։ Նրա մաշված վերնաշապկի տակ, նեղ ու փոքրիկ ուսերն ավելի եյին սրվում, որեցոր նա ավելի յեր նիհարում։

Այնքան դժվար եր ըմբռնում, այն, ինչ վոր կարդում եր նրան իր շեկ բարեկամը։ Նրա մայրը աշխատանք չեր գտնում. բոլոր գործադուլ արած հանքափորերի կանայք գործ եյին փնտրում։ Գործադուլային կոմիտեյի տված չնչին նպաստը ամեն շաբաթ ավելի յեր պակասում։

Տեր Մարտենսը յերբեմն այցելում եր իր փոքրիկ բարեկամին, թոթվում եր նրա ձեռքն ու ասում.

— Վո՜չինչ, Սեվ Ջորջի, վոչի՛նչ։ Ոգնություն կըգա մեզ, անհո՛գ կաց։ Ուրիշ յերկրների բանվորները արտասահմանից մեծ ոգնություն կը հասցնեն... Բայց յեթե ստիպված լինեյինք սովից մեռնել, ելի չեյինք զիջիլ, չե՞ Ջորջի։

— Չե՛, չեյինք,—պատասխանում եր Ջորջին։

— Դե՛ հանքահորում, ածուխի տակ մեռնելն ավելի դուրեկան չե՛, չե՞ Ջորջի։

— Ճիշտ է, միստեր, ճի՛շտ է։

— Իսկ յեթե աշխատանքը մի ժամով յերկարացնեն, են ժամանակ շատ շատերս կկոտորվենք այնտեղ։

— Այո՛, միստեր Մարտենս։ Դժբախտ դեպքերը միշտ տեղի յեն ունենում աշխատանքի վերջում, յերբ բանվորները հալից ընկած են լինում։ Դրա մասին դըպրոցում մեզ համար կարդաց միստեր Սմիլլեն։

— Սմիլլեն բարի տղա յե, գլխով եր անում Մարտենսը յեվ գնալիս ավելացնում.

— Ջորջի, վաղը միտինգ կա հանքերի մոտ։

Սեվ Ջորջին ճանապարհ դրեց հյուրին, իսկ առավոտը ամենից շուտ գնաց ժողովի տեղը։ Նա լսեց թե իրենց յեվ թե ուրիշ տեղերից յեկած հռետորների ճառերը։ Նա լավ եր հասկանում նրանց ասածը։ Նա իր փոքրիկ ձեռքերով, ուրիշներից ավելի յեր ծափահարում։ Ենդրյուն ու փոքրիկ ածխահատը միասին եյին վերադառնում։ Նրանք հուզված՝ ճառերից, յերգերից ու դրոշակներից իրար ձեռք բռնած անցնում եյին մութ փողոցներով։

— Մենք պինդ ենք կանգնած, Ջորջի,—սրտանց ասում եր Ենդրյուն.— այս անգամ մենք կհաղթենք, յեթե դավաճաններ շատ չլինեն։ Այս շաբաթ դժվար կլինի, մինչեվ կոմիտեն փող կստանա... Բայց մենք կհամբերե՛նք, չե՞ Ջորջի՛։ Սեվ Ջորջին առանց այլեվայլի համաձայնում եր.—կհամբերենք միստեր Ենդրյու։

— Ամենից դժվար քո բանն է, խեղճ յերեխա։

— Այո՛, ծանր է ինձ համար։

— Բայց Ջորջի, դու ինքդ հասկանում ես...

— Եդ հասկանալու համար շատ մեծ խելք չի հարկավոր, միստեր Ենդրյու, միայն մի քանի օր պետք է աշխատած լինել այդ հորերի հատակում։

— Կեցցես, Ջորջի՛, կեցցե՜ս, ճիշտ ես ասում։



—ՎՈՉԻՆՉ, ՅԵՐԿՈՒՇԱԲԹԻ ՕՐՎԱՆԻՑ ԱՇԽԱՏԱՆՔ ՏՎԵՔ։ ՄԵՆՔ ՊԵՏՔ Է ՕԳՆԵՆՔ ԸՆՏԱՆԻՔԻՆ

Նրանք բաժանվելիս յերկար սեղմում են իրար ձեռք...

Տանը Ջորջին խիստ խնայելով մի քիչ աղ արած կարտոֆիլ կերավ, յեվ վրան մի բաժակ ջուր խմեց։ Նա սենյակում զգույշ եր շարժվում, վոր չարթնացնի քնած մորը. հետո ինքն ել պառկեց հոր մեծ մահճակալում յեվ քնեց.

Գործադուլային Կոմիտեն յերկուշաբթի որվանից ժամանակավոր կերպով դադարեցրեց նպաստը։ Մայրը ուրիշ կանանց հետ գնաց մի այլ քաղաք, գործ գտնելու։ Սեվ Ջորջին մենակ մնաց։

Քաղցած մարդու համար գիրքը վատ ընկեր ե յեվ Ջորջին որն օրի վրա ավելի ցրված ու անուշադիր եր դառնում։ Շեկլիկ Ռոբը աշխատում եր չընկատել այդ ու համբերությամբ շարունակում եր ցույց տալ ու բացատրել։

Բայց կարտոֆիլի պահեստների մոտ պահակներ եյին դրել յեվ Ջորջին հուսալքվում եր։ Սեվ Ջորջին չհամբերեց։ Թուլությունից տատանվելով, գրկեց Ռոբին յեվ կամաց խլեց գիրքը նրա ձեռքից։

— Չի՛ հարկավոր, Ռո՛բ։

— Ինչո՞ւ, Ջորջի։ Ի՞նչ ե պատահել։ Մի՞թե չես ուզում սովորել։

— Չեմ կարող, Ռոբ։

— Ջորջի՛, չես կարո՞ղ։

— Ինձ հարկավո՛ր ել չի, Ռո՛բ,—ավելացրեց նա ձեռքը մեկնելով,—տե՛ս, յես արդեն չոր չոփ եմ դա-ր ձել, Ռոբ։

Ռոբը գլուխը շարժեց.

— Ելի մի քիչ սպասիր, Ջորջի, մենք կհաղթենք, բոլորն այդպես են խոսում։ Բոլորս ել վատ դրության մեջ ենք։ Հայրս, վոր առանց ծխելու ապրել չի կարող, թողեց ծխելը, նա կսպասի, կհամբերի։ Վերակացուն տնե տուն ման ե գալիս յեվ շտրեյկբրեխերներ *) ե գտնում։ Շա՞տ մարդ ե գտել։

— Չգիտեմ, Ռոբ։ Վոչ վոք չի ուզում մեզ օգնել, Ռո՛բ։ Գերմանիայում նավերն ածուխ են բարձում Անգլիայի համար։ Լեհաստանն ածուխ ե վաճառում։ Յես լսել եմ, վոր խորհուրդների աշխարհից մեզ համար փող են ուղարկել։ Բայց չե՞ վոր, մենք միլիոն ու կես ենք. նրանց ուղարկածից ամեն մեկիս մի շիլլինգ ել չի հասնի։

Սեվ Ջորջին հուսահատվել եր... Ռոբն ուժասպառ սղմեց ձեռքերը, դեն գցեց գիրքն ու գլխարկը վերցրեց։

*) ՇՏՐԵՅԿԲՐԵԽԵՐ.—Գերմաներեն բարդ բառ ե յերկու խոսքերից բաղկացած ՇՏՐԵՅԿ և ԲՐԵԽԵՐ—գործադուլը կոտրող։ Այդպես են կոչվում այն բանվորները, վորոնք գործադուլի որենքները խախտելով, դավաճանում են գործադուլին և գնում աշխատելու.



**—Վերակացո՛ւ, դուրս այստեղից**

— Յես Ելենի յեվ մյուսների հետ կխորհրդակցեմ, թե ինչ անենք քեզ համար, Ջո՛րջի. ցտեսություն։

— Ցտեսություն, Ռո՛բ, ինձ վոչինչ չի հարկավոր։

Ռոբը գնաց։ Ջորջին մինչեվ իրիկուն եդպես անշարժ ել մնաց։ Ժամը մեկին, յերբ սովորաբար կարտոֆիլի յեր գնում, նա վեր կացավ։ Պահեստներին շատ խիստ եյին հսկում։ Ջորջին ախ քաշեց, անկյուններն ընկավ, գոնե կարտոֆիլի մի կճեպ գտնելու, բայց իզուր։ միայն առավոտը կարող եր վերադառնալ։ Ջորջին աղանձած աչքերով մոտեցավ պահարանին, աղամանից մի պտղունց աղ վերցրեց յեվ դրեց լեզվին։ Յերկար ժամանակ նա աղի թքով կշտանում եր. հետո կուլ տվեց ու վրայից ջուր խմեց։

Պատուհանը թխկացրին։ Ջորջին վեր թռավ։

— Գուցե պահեստների պահակը գնաց, մտածեց նա յեվ ուրախությամբ դուռը բաց արավ..—ո՞վ ե։

Ներս մտավ վերակացուն։ Ջորջին զարմացած յետ ու յետ գնաց։

— Բարի իրիկուն—ասավ վերակացուն ներս մտնելով,—քանից դուրս ե գալիս, վոր դու ենքան ել նեղություն չես քաշում, փոքրիկ Ջորջի։ Ինձ թվաց, վոր յերբ յես պատուհանը թխկացրի, դու ընթրում եյիր։

Ջորջին ձեռքերը դեպի թիկունքը տարավ ու չըպատասխանեց այդ ծաղրին։

— Ի՞նչ եք կամենում։

— Գո՛րծով եմ յեկել, Ջորջի։

— Ասացեք։

— Լսի՛ր, Ջորջի, դու շատ փոքր ես, յեվ շուրջդ անցած-դարձածից բան չես հասկանում։ Դու շատ

փոքր ես։ Բայց հանքատերը հիշում ե քեզ. դու գիտես, Ջորջի, վոր նա միշտ բարի յե յեղել քո հանդեպ։ Նա քեզ գործ տալու համար չվախեցավ որենքը խախտել։

— Իսկ, դու, վերակացու Լոուվրո, յեվ քո բարի տերը ի՞նչ եք ուզում ինձնից։ Գուցե եք՞ չեք ուզում գործ տալ։

— Այո, Ջորջի մի խումբ բանվորներ ենք հավաքել, վորոնք համաձայն են աշխատել առաջվա պայմաններով, բայց մի ժամ ավելի։ Մի բարշող եր պակասում, յես հիշեցի քեզ, գիտեմ դրությունդ նեղ ե։ Ջորջի, նրանք գործադուլ են անում, վորովհետեվ կուշտ են յեվ չեն ուզում աշխատել։ Դու յերկու շիլլինգ յերկու պենս կստանաս, Մի շիլլինգ ավելի կստանաս, բայց այդ գաղտնի կպահես։ Գլխավորն այն ե, վոր մենք գործը սկսենք... Հետո, Ջո՛րջի, հանքատերը ձեզ չի մոռանալ։ Ձեր ամբողջ կյանքում ամենալավ պաշտոնները կստանաք։ Դու գիտե՞ս ինչ ե լավ պաշտո՛ն, Ջորջի՛։

Փոքրիկ գործադուլավորի գլուխը պտտվեց. նա ստիպված եր բռնել աթոռից, վոր չհարձակվի վերակացվի վրա։ Ու միայն աղաղակեց խուլ ձայնով.

— Դուք գիտե՞ք, ի՞նչ կնշանակե շտրեյկբրեխեր...

Վերակացուն ձեռքը թափ տվեց։

— Թո՛ղ մի ե՛, Ջորջի, դու ի՞նչ գործ ունես ընկերներիդ հետ։ Կարեվորը հանքատիրոջ աչքում լավ յերեվալն ե։ Հանքատերն ե ամբողջ կյանքումդ կերակրում քեզ. իսկ ընկերներիցդ ի՞նչ ստացար։ Ձե՛ռք տուր, Ջորջի, քո համառությամբ բացի սովամահ լինելուց ուրիշ բան չես ձեռք գցել. Ջո՛րջի, դե՛։

Նա շարունակ մեկնում եր ձեռքը. իսկ Ջորջին թիկունքին եր դրել ձեռքերը։ Նրան թվում ե, վոր յեթե ինքն ավելի՛ ուժեղ լիներ, կհարձակվեր վերակացվի վրա յեվ նրա լիրբ քիթ ու պռունկը կջարդեր։ Նա գիտեր, վոր յեթե կուշտ վերակացուն իր ահագին բռունցքը շարժեր, Ջորջին իսկույն կգնար գերեզմանատուն յեվ կզրկվեր այն վեց որվա կյանքից, վոր նա կունենար, նույն իսկ առանց դեպի կարտոֆիլի պահեստները ճանապարհորդելու։

Ցեվ Ջորջին կանգնած եր անշարժ։ Կուշտ մարդու կերպարանքը նրան հիշեցնում եր իր քաղցած փորը յեվ աշխատանքի մասին մտածելը կապվում եր յեփած կարտոֆիլի լի ամանի յեվ մի կտոր հացի հետ։ Բայց Ջորջին կծեց իր շրթունքները յեվ հաստատապես գերադասելով սովամահ լինելը, խուլ ձայնով գոռաց.

— Վերակացո՛ւ, դո՛ւրս այստեղից։

Ջորջին յերկար ժամանակ եր, վոր լսել եր յեվ վերակացուն չեր կասկածում, վոր յերեխան ձեռք կըտա իրեն։ Փոքրիկ ածխահատի կատաղի աղաղակը շփոթեցրեց նրան։

— Դե՛, սատկի՛ր մկան նման, անիծվա՛ծ լակոտ։ Ցեվ հույս մի ունենար, թե յերբ յեվ իցե յես այս կըմոռանամ։ Սեվ ցուցակում*) կգրեմ քո անունը։ Ցեթե հիմա չսատկես, մի տարուց հետո կսատկես։

Վերակացուն կատաղած սեղմեց բռունցքները յեվ դուրս գնաց։

3

Թոմաս Լաուրենսը, վոր իր վորդու հետ համաձայնվել եր յերկուշաբթի որվանից աշխատանքի անցնել մի հաստ յեվ ուռած մարդ եր յեվ աշխարհում, բացի ողուց, ամեն բանի վերաբերմամբ անտարբեր։

Նա կարիք չուներ յեվ մյուսներից շատ ավելի կարող եր դիմանալ գործադուլին. բայց ողու փողը վերջացել եր յեվ վերակացվի առաջարկությունից գայ-

*) ՍԵՎ ՑՈՒՑԱԿ.—Գործարանատերերն իրենց մոտ պահում են մի ցուցակ, վորի մեջ մտցնում են «անհնազանդ», բողոքող բանվորների անունները և հեռացնում աշխատանքից։ Մի գործարանատիրոջ ցուցակում ընկած բանվորը, գրվում ե բոլոր գործանատերերի ցուցակներում և նրան աշխատանքի վոչ մի տեղ չեն ընդունում։ Այդ ցուցակն ե, վոր կոչվում ե ՍԵՎ ՑՈՒՑԱԿ։



—Մեր գործը, գլուխ չեկավ, վերակացու։

թակղվեց։ Նախորդ օրվա յերկու շիլլինգ էր ստացել յեվ մի պանդոկում ոտին առջեվը դրած, սպասում էր վերակացվին, վոր կոնծեն։

Վերակացուն յեկավ թթված դեմքով։ Թոմաս Լաուրենսը սպասեց, մինչեվ վերակացուն նստեց իր կողքին, ապա բաժակը մոտեցնելով շրթունքներին, ասաց.

— Հ՞ը, ի՞նչպես յեղավ։

— Անիծված լակոտը, իսկ հերն է։

— Ի՞նչ,—մռայլ կերպով ծոր տվեց Թոմասը.—ի՞նչ, Սեվ Ջորջին չի ուզում աշխատե՞լ։

— Եդ լակոտը եսոր-եգուց բաղցից կմեռնի...

Թոմասը բաժակը ձեռքին, չէր խմում։ Դու ինձ ծաղրո՞ւմ ես, Լոուփուտ, խռխռացնում էր նա,—Սեվ Ջորջին հրաժարվե՞ց։

— Հա՛ է՛լի,—պնդեց վերակացուն,—ինչ կատակի բան կա։ Զզվելի լակոտը դռնից դուրս արավ ինձ։ Նա իր եդ արարքը շուտ չի մոռանալ։

— Սեվ Ջորջին հրաժարվե՛լ է,—յենթադրում, էր Թոմասը,—Ջո՛րջին հրաժարվել է՛։

— Ի՞նչ ես փնթփնթում,—կտրտեց վերակացուն,—եդ ի՞նչ մեծ բան է Ջորջին։ Թե՞ կարծում ես եվ ուրիշ բարշող յերեխա չի գտնվի։

— Գուցե դու ուրիշ բարշող կգտնես, բայց ուրիշ ածխահատ գտնելը ավելի դժվար կլինի...

Վերակացուն վեր թռավ։

— Դրանով ի՞նչ ես ուզում ասել։

Թոմաս Լաուրենսը կարմրեց։ Նա յեզան նման գլուխը թեքեց յեվ փնթփնթաց.

— Այն միայն, ինչ վոր ասացի։

Դրանից հետո նա դանդաղորեն վերցրեց իր բերնեբերան լի բաժակը յեվ թափեց գետնին։

Վերակացուն յետ թռավ սեղանից։

— Սա ի՞նչ բան է, Թոմա՛ս։

— Մեր գործը գլուխ չեկավ, վերակացո՛ւ։

Վերակացուն սառեց։ Թոմաս Լաուրենսը կամացուկ վեր կացավ, վճարեց պանդոկապետին յեվ վերակացվին չպատասխանելով, դուրս գնաց։

Նա անցավ մութ ու մռայլ փողոցներով յեվ դըժվարությամբ գտավ Ջոնստոնների ներքնահարկ տան պատուհանը։ Կամաց թխկթխկացրեց։ Ջորջին մի անգամից վեր թռավ, բայց նայեց դեպի պատուհանը։ Նա ածխահատի միայն կոշիկներն էր տեսնում, բայց այդ էլ բավական էր, վոր հանգիստ բաց անի դուռը հյուրի համար։

Թոմասը դանդաղ ներս մտավ յեվ գլխարկը վերցրեց։

— Բարի իրիկուն, մի՛ստեր Լաուրենս,—տխուր գլուխ տվեց Ջորջին,—ինչո՞ւ այսպես ուշ յեկար։

Թոմասը վոտից մինչեվ գլուխ դիտեց նրան։

— Ուրեմն դու մերժեցի՞ր, Ջորջի։

Փոքրիկ ածխահատը իսկույն չպատասխանեց։

— Յեվ դու դ՞ուրս արեցիր վերակացվին, Ջորջի։

— Յես դուրս արեցի նրան, միստեր Լաուրենս. յես դուրս արեցի նրան,—կրկնեց նա հաստատակամությամբ յեվ նրա սեվ դեմքի վրա կապույտ աչքերը փայլատակեցին զայրույթով։

— Ջորջի, գուցե մայրդ լավ աշխատա՞նք է գըտել։

— Եսոր յես յերկու պտղունց աղ եմ կերել միայն ու վրայից ջուր խմել։

Ճի՞շտ ես ասում, Ջորջի։

— Դա այնպես ճշմարիտ է, ինչպես ճիշտ է միստեր Լաուրենս, վոր դու ծեր ածխահատ ես, իսկ յես Սեվ Ջորջին, վոր ածուխ եմ բարշ տալիս։

Թոմաս Լաուրենսը մոտեցավ փոքրիկին յեվ աչքերը թավ հոնքերի տակ քաշելով, ասաց.

— Սեվ Ջորջի, գուցե թույլ կտաս ինձ, վոր համբուրեմ քեզ։

Ջորջին զարմացած նայեց հսկա ածխահատին, բայց արագ ասաց.

— Այո՛, միստեր Լաուրենս, յեթե միայն յես արժանի յեմ դրան, յեվ յեթե դուք չեք զզվում, վոր մինչեվ հիմա յերեսս կարգին չեմ լվացել. ջուր տաքացնելու բան չունեմ։

— Յես սովոր եմ ածխի փոշուն, Ջորջի։

Թոմաս Լաուրենսը մեկնեց ձեռքը փոքրիկ ածխահատին յեվ իրոք սա իր չոր ու սառը ձեռքը տըվեց նրան, Թոմասը մի պինդ համբուրեց Սեվ Ջորջիին։

— Այս փոշին, Ջորջի, ավելի դուրեկան է, քան բրնձի պուդրան, վոր մեր տերերը քսում են իրենց յերեսին,—ավելացրեց նա.—յեվ դու լա՛վ ես արել Ջորջի։ Յես կարծում եմ, վոր դու շատ հին ածխահատների յես ամաչեցրել։

Թոմաս Լաուրենսը չվերջացրեց։ Նա մի տեսակ, տարօրինակ կերպով ձեռքը թափ տվեց յեվ առանց մի խոսք ավելացնելու դուրս գնաց։

Ջորջին տարակուսանքով ճանապարհ դրեց նրան. Նա լավ չհասկացավ, թե ինչո՞ւ յեկավ այս մարդը։ Ասենք նա ենքան թույլ էր, վոր չէր էլ կարող եդպիսի տարօրինակ դատարկ բաների վրա գլուխ ճաքցնել յեվ շուտով մոռացավ։

Նա նույնիսկ այդ տարօրինակ այցելության հետ չկապեց այն, վոր առավոտը անհայտ տեղից իր դըռանը մի մեծ կողով կարտոֆիլ ու հաց գտավ։

Բայց իրիկունը, ամեն օրվա պես Ռոբը մտավ նրա մոտ, նա կամաց հարցրեց

— Իհարկե, այժմ յես կուշտ եմ, Ռոբ, յեվ գուցե կարող եմ հիմա սովորել. բայց դու ինչի՞ եդպիսի բան արեցիր։

— Յես ի՞նչ եմ արել, Ջորջի.—չհասկացավ Ռոբը. Ջորջին ցույց տվեց կողովը։ Ռոբն ուսերը վեր քաշեց.

— Եդ բանը մենք չենք արել, Ջորջի, թեյեվ մենք շարունակ ուզում ենք քեզ ոգնել։

— Մայրս չի յեկել,—նկատեց Ջորջին.—նա ասպարել է միայն, վոր գնում է Եդինբուրգ՝ աշխատանք փնտռելու։ Յես կարծում եյի, թե սա քո արածն է, Ռոբ։

— Հարեվաններից մեկը կլինի արած—հաստատ պատասխանեց Ռոբը—յեվ նրա համար, վոր դու վերակացվին դուրս ես արել, Ջո՛րջի։ Բոլորը խոսում են

եզ մասին լավ գովում են քեզ։ Բայց, Ջորջի, մի՞թե յես չգիտեյի, վոր դու այդպես ել կվարվես, թեկուզ քաղցած մեռնելիս ել լինես... Մեզնից վոչ վոր չզարմացավ։ Ու յես չեմ շնորհավորում քեզ, Ջորջի։ Բայց յերբ Էլլենը Խորհրդային միության մեր պատանի ընկերներին նամակ եր գրում, յես պահանջեցի, վոր նա գրի քո արածի մասին, Ջորջի։ Թող նրանք իմանան, թե մենք ի՛նչպիսի լավ տղերք ունենք։

Ջորջին այնպես հուզվեց, վոր ածխի ներկի տակից ել նրա կարմրելը նկատելի յեր։ Նա շփոթվեց յեվ փնթփնթաց.

— Դուք դեռ նամակագրություն ունե՞ք, Խորհրդային միության պիոներների հետ, Ռոբ։

—Ի հարկե, Ջորջի, զարմացավ Ռոբը այս տարօրինակ հարցի համար.—մի՞թե դու չգիտեյիր.

Հա՛, յես գիտեյի, ճի՛շտ,—ավելի շփոթվեց Սեվ Ջորջին.—յես հենց եսպես հարցրի... Յես ուզում եյի հարցնել, թե նամակները տե՞ղ են հասնում, Ռոբ։

— Մենք նրանցից պատասխան ենք ստանում, Ջորջի։ Մի՞թե յես քեզ չեմ պատմել. Մի՞թե Էլլենը նրանց նամակները քեզ ցույց չի տվել...

— Հա՜, յես մոռացել եյի—վերջնականապես շփոթվեց Ջորջին.—ներիր ինձ, Ռո՛բ։ Հիշողությունս եսպես ե թուլացե՜լ. յեվ դժվարությամբ եմ քայլում... Մի՛ բարկանար, Ռոբ...

Ռոբը զարմանքով նայեց նրան։

4.

Յեթե Սեվ Ջորջի մայրը Եդինբուրգում կարողանար, այնտեղ յեղող ահագին միտինգին գնալ, իր Ջորջի մասին մի բան կիմանար։ Իսկ միստեր Կուկը, Հանքափորերի Ֆեդերացիայի գլխավոր քարտուղարը, իր ճառի մեջ հիշեց Սեվ Ջորջին, վոր դուրս ե արել վերակացվին։ Միստեր Կուկի կարծիքով, փոքրիկ ածխահատի վարմունքը վկայում ե, վոր հանքային բանվորները կարգապահ են յեվ պատրաստ մինչեվ վերջը շարունակելու գործադուլը։

Բայց Ջորջի մայրը չլսեց Կուկի ճառը։ Նա Եդինբուրգի ներքնատներից մեկի լվացքատանը տաք գոլորշու յեվ սապնի փրփուրից խեղդվում եր յեվ վոչինչ չգիտեր իր Ջորջի մասին.

Սեվ Ջորջին հուսալքվում եր։

Նա գիտեր, վոր հանքահորերը դատարկ են, նա տեսնում եր, վոր հանքերում խոտ ե դուրս գալիս։ Ինքը միայն բախտավոր դիպվածով յեվ հարևանների վողորմությամբ փրկվում եր սովամահ լինելուց։ Նա արդեն լսել եր հիվանդացած հանքափորերի մասին. Նա կարդացել եր հանքատերերի ամեն տեղ կախ տված պայմանները, աշխատանքը վերսկսելու մասին։

Շեկլիկ Ռոբի վոտքերն յերեվացին։ Ջորջին իսկույն ճանաչեց, բայց նրա վոտքերի մոտ ուրիշ վոտներ ել կային, վոր չիմացավ թե ումն են։

Նա դուրս յեկավ, հյուրերին դիմավորելու։ Ռոբի հետ Էլլենն եր։ Նրանք ուրախ եյին։ Էլլենը հագիվ եր կարողանում զսպել իրեն ու չծիծաղել, չնչալ։ Ջորջին գլուխը կախեց։ Այդպես արեվի կիզիչ ճառագայթներն են ստիպում թառամել յերկար ժամանակ ներքնատան հեղձուցիչ օդում մնացած ծաղիկներին։

— Սեվ Ջորջի՛, ի՞նչ ե պատահել քեզ.— աղաղակեց աղջիկը, ձեռքը մեկնելով,—մենք լավ լուրեր ենք բերել քեզ, իսկ դու...

Ջորջին յերեսը շուռ տվեց։

— Եդ ի՞նչ լավ լուրեր են, Ռոբ,—հարցրեց նա —յես լավ բան եմ մտածում. գիտես ի՞նչ, Ռոբ։

— Ի՞նչ

— Չեմ ուզում մեռնել, Ռոբ, բայց դուցե ավելի լավ կլինի մեռնեմ։ Ռոբ, յես չեյի ուզենա տեսնել թե ինչպես կը՝ գնանք ութ ժամ աշխատելու, յեվ թե ինչպես վերակացուն ինձ սեվ ցուցակի մեջ կմտցներ, վոր յես ել վոչ մի տեղ աշխատանք չգտնեմ։

— Սեվ ցուցա՞կ, ո՜, չե՛, Ջո՛րջի։ Մի բիչ համբերի՛ր։

— Արժե՞, վոր Ռոբ,—ծիծաղեց Ջորջին.—Հ՞ը։

Ռոբը չպատասխանեց յեվ շուռ յեկավ Էլլենին.

— Նամակը կարդա՛, Էլլեն. են ժամանակ կըտեսնենք, թե ինչ կասի մեր Սեվ Ջորջին։

Եդ ինչ՞ նամակ ե, Ռոբ,— վեր թռավ Ջորջին։

— Էլլեն կարդա։ միստր Սմիթը ճշտությամբ թարգմանեց. մենք հենց նստեղ եյինք, վոր թարգմանեց։

Ջորջին ձեռքերը կրծքին սեղմեց։

— Ինչո՞ւ յեք ուզում եդ նամակը կարդալ ինձ համար.

— Դե՛, ախար նրանք քո մասին են գրել, Ջո՛րջ։

Էլլենը թարգմանությունը բաց արավ, իսկ բնագիրը տվեց Ջորջին.

— Նայիր նրանց բառերին։ Մենք բառացի թարգմանել ենք յեվ դու բոլորը կհասկանաս. դե՛։

Ջորջին նայում եր այդ տարօրինակ տառերին, վոր նման չեյին անգլերենին։ Իսկույն աչքի յեր խըփում մանկական անվարժ ձեռագիրը։ Ջորջին խիստ հուզվեց։

— «Թանկագին ընկերներ,—կարդաց Էլլենը,—Մենք ստացանք ձեր նամակը, վորտեղ դուք պատմում եք Սեվ Ջորջի մասին։ Մենք ել ենք հպարտանում այդպիսի համարձակ ու ազնիվ ընկերով։ Մենք նրան ընկերական վողջույն ենք ուղարկում։ Ձեր նամակը ստացանք մի որ առաջ, յերբ մեր ընկերները անգլիական հանքահանների օգտին դրամ պիտի հավաքեյին։ Մենք շրջում եյինք մեր թաղում յեվ պատմում եյինք Սեվ Ջորջի մասին...

Ջորջի ձեռքերը դողում եյին ու նա հազիվ եր բռնում նամակը։ Իսկ Էլլենը հուզված շարունակում եր կարդալ։

— «Մենք արդեն անցկացրինք Միջազգային Մանկական վեցերորդ Շաբաթը, վորին այդտեղ ձեզ հետ մասնակցեց, յերեվի նաեվ Սեվ Ջորջին։ Մեր միտինգում պատմեցինք նրա մասին։ Այդ որերին մենք հիշեցինք մեր անգլիացի պատանի ընկերներին. ու դուք

պետք է ասեք Սեվ Ջորջին յեվ հանքափորերի բոլոր յերեխաներին, վոր նրանք հավատարիմ բարեկամներ ունեն մի յերկրում, ուր տերեր չկան, վոր տասներկու տարեկան յերեխաներին հանքահորերն ուղարկեն. Թագավոր չկա, վոր ութժամյա բանվորական օր հաստատի, մի հարցի համար, բանտով յերեխայի ծնողները ջարդող ուսուցիչներ չկան։ Ու մենք նորից ու նորից յերդվեցինք մինչեվ վերջը շարունակել մեր հայրերի աշխատանքն ու պայքարը. միշտ պատրաստ։

Սեվ Ջորջին սառեց։

— Վերջացա՞վ — դուրս թռավ նրա գունատ շրթունքներից։

Ետևը միայն ստորագրություններն են, բացատրեց Ելլենը. ուզում ե՞ս կարդամ...

— Ե՛, սա ի՞նչ է վոր — ընդհատեց նրան Ռոբը, նայելով Ջորջին — սա ի՞նչ բան է, ինչ է։

— Ո՛ Ռո՛բ, սա բավական է։ Սա շատ շատ է ինձ համար, Ռո՛բ։

Ելլենը նամակը ծալեց։

— Ջորջի, մենք ժամանակ չունենք։ Դպրոցի բակում մեզ սպասում են։ Մենք բացի քեզնից դեռ վոչ վորի չենք կարդացել։ Թե ուզում ես մի անգամ եվ լսել, գնանք միասին...։

— Ջորջին սենյակում այս ու այն կողմն ընկավ գլխարկն ու կոշիկները գտնելու։ Նա զոռով եր հագնում կոշիկները։ Ռոբը չկարողացավ իրեն պահել յեվ չարությամբ հարցրեց.

— Գուցե, ուզ՞ում ես մեռնել, Սեվ Ջորջի։

Ջորջին լուռ եր։

— Վորպեսզի չտեսնե՛ս այն, Ջորջի, թե վերակացուն քեզ ինչպես կգրի սեվ ցուցակում։

— Վո՛չ, Ռոբ։

Կոշիկները հագնելուց հետո, Ջորջին ավելի բարձրահասակ եր թվում յեվ կարծես ավելի հաստատուն եր կանգնում։ Ռոբին ու Ելլենին նա բոլորովին ուրիշ մարդ թվաց, յերբ փայլատակող աչքերով խոսում եր նրանց հետ։

— Մի՞թե մենք չենք կարող նույն բանն անել, ինչ վոր նրանք արեցին իրենց յերկրում։ Մենք կմեծանանք, Ռոբ, յեվ կանենք այդ բանը, հավատա՛ ինձ։

— Յես հավատում եմ, Ջո՛րջի։

Վարկենական խիստ լռությունը կապեց նրանց բոլորին, կարծես գաղտնի յերդումով։ Փոքրիկ ածխահատը, լուռ նայելով իր բարեկամների աչքերին, սեղմեց նրանց ձեռքը։ Նա այդ յերդումը կարդաց նրանց աչքերի փայլի մեջ յեվ գլուխը բարձր բռնած դուրս գնաց նրանց յետեվից։

Թարգմ. Սիմակ

ԽՆԿՈ ԱՊԵՐ

## ՓԱՅՏԱՀԱՏԻ ՅԵՐԳԸ

I

Ինձ հաց տվող,
աշխատանք,
Սիրելի յես,
թա՛նգ ես, թա՛նգ.
Յես քեզնով եմ
միշտ հպարտ,
Հեռու ինձնից
ցավ ու դարդ։
Սև որերը գնացին.
Ինչքան սուր ես,
իմ կացին.
Բարձրանում ես
վեր, չափով,
Ու իջնում ես
ցած թափով
Հաստ գերանին
միշտ անշեղ,
Ամեն զարկից
տաս տաշեղ։

II

Սուր կացնիցս էլ
ավելի
Սուր սղոցս է
սիրելի.
Սղոցում է
հաստ գերան,
Սղոցում է,
սղոցում,
Ինձ հետ խոսում,
զրուցում.
Խը՛ղ, վը՛ղ,
ընկեր եմ քեզ
օգնում եմ յես։

— . —

Կացին, սղոց, աշխատանք.
Սիրելի յեք, թանգ եք, թանգ.
Յես ձեզնով եմ միշտ հպարտ,
Հեռո՜ւ, հեռո՜ւ ցավ ու դարդ։

Ց. ՍԻՄՈՆՅԱՆ

# ՄԵԾ ՄԱՐՏԻԿՆԵՐԻ ՈՒՂԻՈՎ

Հեղափոխությունը զոհեր է պահանջում: Հեղափոխական պայքարում շատ ու շատ զոհեր ենք տվել և դեռ կը տանք մինչև կոմունիզմի վերջնական հաղթանակը:

Սեպտեմբեր ամիսն էլ մեծ զոհերի անուններով է դրոշմված: Այդ ամսում էլ աշխատավորությունը ծանր կորուստներ է ունեցել:

Այս տարվա սեպտեմբերի 20-ին լրացավ 26 կոմունարների սպանության ութերորդ տարին: Այդ այն օրն է, յերբ անգլիական իմպերիալիստները, իրենց գործակից ունենալով դաշնակ-մենշևիկ-մուսավաթ-եսեր հակահեղափոխական կուսակցություններին, վայրագորեն վերջ տվին Ստեփան Շահումյանի, Ալյոշա Ջափարիձեյի, Մաշադի Ազիզբեկովի, Վանյա Ֆիոլետովի և մյուս ընկերների կյանքին:

Նույն այդ սեպտեմբեր ամսի 26-ին լրացավ մի ուրիշ հեղափոխական մեծ մարտիկի—ընկ. Սուրեն Սպանդարյանի մահվան 10-րդ տարեդարձը: Նա մեռավ փետրվարյան հեղափոխությունից 6 ամիս առաջ, Սիբիրի աքսորավայրում: Բայց այդ մահը, սովորական մահ չէր, այլ ավելի շուտ սպանություն և այն էլ ամենասարսափելի սպանություն: Ցարական աքսորի անասելի տանջանքները, քաղցը, հետզհետե քայքայեցին այդ անընկճելի և տոկուն հեղափոխականի առողջությունը և նա մեռավ: Ցարը գիտեր իր գործը, ինչու միանգամից սպանել, քանի վոր կարելի յեր տանջել:

Յեվ նրանք, ընկ. Սուրեն Սպանդարյանը, 26 կոմունարները, զոհել են իրենց՝ մեր այսօրվա ազատության համար: Նրանց այդ անձնազոհության օրինակն է, վոր ամենից առաջ պետք է վերցնի յուրաքանչյուր պիոներ: Մենք նրանց պես, յերբ պահանջվի չպետք է խնայենք մեր կյանքը հեղափոխական աշխատանքի և պայքարի համար: Այդպես պետք է դաստիարակվենք մենք – պիոներներս:

Այդ մեծ հեղափոխականները, միաժամանակ յեղել են ամենահետևողական միջազգայնականներ. և ուրիշ կերպ էլ չէր կարող լինել: Սպանդարյանը, Ստեփան Շահումյանը, Ջափարիձեն և մյուսները, միշտ պայքարել են մանր բուրժուական կուսակցությունների շաղ տված ազգայնականության դեմ: Նրանք միշտ հարվածել են բոլոր նրանց, վորոնք աշխատել են տարանջատել զանազան ազգերի աշխատավորներին, չթողնել վորպեսզի նրանք միախմբվեն ընդհանուր թշնամու՝ բուրժուաների դեմ: Դաշնակցականները, այդ ամենաթթու ազգայնականները, շատ անգամ են զգացել իրենց կաշու վրա մեծ հեղափոխականների այրող մտրակները և դրա համար էլ այնքան ատելի յեն նրանց:

Ահա մենք պիոներներս պետք է լինենք նրանց պես միջազգայնականներ. ինչպես ասում են հոգով սրտով միջազգայնականներ: Մեզ համար գոյություն չունի և չպետք է ունենա թուրք, հայ, վրացի, ռուսներ և այլն. մեզ համար գոյություն ունի և պետք է ունենա մի ընդհանուր աշխատավորական բանակ, վորի շարքերում մենք ամենքս պետք է աշխատենք սոցիալիզմի կառուցման ճակատում, պետք է պայքարենք համաշխարհային պրոլետարական հեղափոխության համար: Մեզ թշնամի յեն հայ, թուրք, վրացի և ամեն ազգի բուրժուաներն ու շահագործողները:

Մեծ հեղափոխականների վողջ կյանքն ու գործունեյությունը մեզ պիոներներիս և առհասարակ աշխատավոր պատանեկության համար շատ և շատ բան կարող է սովորեցնել: Մեզանից ամեն մեկը, պետք է ուսումնասիրի նրանց կենսագրությունը, պետք է կարդա այն բոլոր տպված և տպվող գրքերը, վորոնք վերաբերում են նրանց կյանքին ու գործունեյությանը:



Ընկ. ընկ. Ստեփան Շահումյան յեվ Սուրեն Սպանդարյան



# ՍՈՒՐԵՆ ՍՊԱՆԴԱՐՅԱՆԻ ՆԱՄԱԿԻՑ, ԳՐԱԾ ԻՐ ՅԵՐԵԽԱՆԵՐԻՆ

**27 Նոյեմբերի, 1915 թ.**

Սիրելի Մանյուրկա, սիրելի յերեխաներ.

... Հետաքրքիր է կարդալ Խատիսովների ու Դոլգուխանովների [1]) և գրպանահատության մյուս վարպետների ճառամարտությունները՝



**Ընկ. Ս. Սպանդարյանի յերեխաները — Ստեփանը, Մարիամը, Անժելիկան յեվ Սերգեյը, բոլորը կոմյերիտմիության անդամներ են**

Յեթե ձեզ, յերեխաներ, կվիճակվի յերբեմն լսել այն, ինչ գրում կամ ասում են նրանք, յերբեք չհավատաք։ Նրանք խաբեբաներ են, վաճառող իրենց և խիղճը և պատիվը, յեթե միայն խիղճ ու պատիվ նրանք ունենան։

Յերեխաներ, դուք յերևի լսել եք վոր ֆրանսիական Ռեյմս [2]) քաղաքի ռմբակոծման ժամանակ, գերմանական ռումբերից փլավեց Ռեյմսի հին յեկեղեցին — կաթոլիկական տաճարը։ Այդ առթիվ շատ գրեցին և աղմկեցին. տաճարի ռմբակոծումը անվանում եյին վայրենություն, բարբարոսություն և այլն, և այլն։ Հիմա մտածեցեք, վո՞րն է սարսափելի — **տաճարի կործանումը, թե՞ հազարավոր ու միլիոնավոր մարդկանց կործանումը։ Ներկայումս ամեն օր, ամեն ժամ, ամեն րոպե, հազարավոր, հարյուր, հարյուր հազարավոր մարդիկ սպանվում են մեկ մեկու, միլիոնավոր յերեխաներ վորբ են մնում, միլիոնավոր մայրեր զրկվում են իրենց զավակներից, տասնյակ միլիոնավոր մարդիկ կործանվում են, սովամահ լինում։**

Պատերազմը, ինքնին սարսափելի, վայրենի, բարբարոսական գործ է մանավանդ այս, համաշխարհային պատերազմը։ Մենք և դուք, յերեխաներ, ամեն կողմով վատ ժամանակաշրջան ենք ապրում։ Սակայն մի ջղայնանաք մի ասեք վոչ վոքի։ **Մութը կանցնի, կգա հատուցման ժամը թափված արյունի ծովերի, արյան ովկյանոսների յեվ միլիոնավոր մարած կյանքերի փոխարեն։**

Ուղարկում եմ լուսանկարները։ Ջոկել եմ ամենալավերը։ Այս շունը Վերնին է, իմ շատակեր և խորամանկ շունը։ Նրա մասին ձեզ գրել եմ առաջ։ Հիմա յես ունեմ շատ սահնակներ, լծում եմ Վերնուն, Լեբեդին ու Դամկին և քշում։

Մի շաբաթ աշխատեցի անտառում, իսկ խրճիթս անտառից շատ հեռու յե, քիչ մնաց քիթս ցրտահար լիներ, (43 աստ. ցուրտ եր), բայց և այնպես ինը ռուբլի աշխատեցի։ Հիմա չեմ աշխատում։ **Դժվար է, ուժերս չեն ներում։** Պարտք ունեյի, աշխատածս տվեցի պարտքիս դիմաց։

Այն գրքերը, վոր դու կարդում ես, վոչինչ, լավ գրքեր են, **բայց ավելի լավ է բնագիտությունից կարդա։** Ահա յես քիչ բան եմ իմանում բնության մասին և շատ հաճախ դրանից տուժում եմ։ Ունես ժամանակ — **կարդա, սովորիր։** Ներկայումս ձեր ժամանակը ամենաթանգն է։ Ուրախ եմ քո հաջողությունների համար, Մանյուրկա։

Ի՞նչպես եք նոր լեզուների, գերմաներենի, ֆրանսերենի հետ։

Հաճախ գրեցեք յերեխաներս։

Շատ, շատ եմ մտածում ձեր մասին, տխրում, վշտանում մշուշոտ այս օրերին։ Մեզ մոտ լուսանում է ժամը 10-ին, իսկ մթնում ժամը 3-ին։ Յեվ որն էլ այնպես է, ինչպես լինում է ձեզ մոտ աշնանը, մթնշաղին։

Յես ձեզ գրել եմ արդեն վոր ամեն ինչի կարիք ունեմ, մանավանդ գրքերի և ընթերցանության։

Սիրելի Նյուկա, ինչպիսի ուրախությամբ կգայի և կհամբուրեյի քեզ։ Բայց չեմ կարող։ Լյուլկա, դու շատ նիհար ես։ Այդպես չի կարելի։ Ավելի շատ սնվիր։ Ստեփանիկ, ինչու յես լուսանկարում այդքան տխուր դուրս յեկել։ Բոլորիդ ջերմորեն և շատ համբուրում եմ, իսկ Վերնին ձեր դնչերն է լիզում...

**Ձեր հայրիկը**

---

[1]) **Խատիսյանն ու Դոլուզխանովը** Թիֆլիսի բուրժուազիայի ներկայացուցիչներն ու ղեկավարներն եյին։ Խատիսյանը հետագայում, դաշնակցականների որոք, յեղավ Հայաստանի կառավարության նախագահը։

[2]) **Ռեյմսը** գտնվում է Ֆրանսիայում, Փարիզի մոտ։ Համաշխարհային պատերազմի ժամանակ, 1915 թվին գերմանացիները ռմբակոծեցին քաղաքը։ Դրանից փլավեց նաև Ռեյմսի հին տաճարը։ Այդ մասին է և գրում ընկ. Ս. Սպանդարյանը։

# Ի՞ՆՉՊԵՍ ՊԵՏՔ Է ԱՇԽԱՏԻ ՖՈՐՊՈՍՏԸ

Ռ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

«Վերջին (հինգերորդ) դասն է։ Զանգին 5—10 րոպե է մնացել։ Կարծես աթեղների վրա նստած լինես։ Ուզում ես վեր կենալ, վերցնել գրքերդ ու դուրս թռչել։ Ո՞ւր։ Դեպի փողոցը, ուր ուրախ խաղում են քո ընկերակիցները։

Րոպեներն անցնում են չափազանց ձանձրալի, անհետաքրքիր։

Հանկարծ հնչում է զանգը։ Գրքերդ վերցնելով, դուրս ես փախչում դասարանից, բայց ուրախությունդ փոխվում է տխրության, յերբ աչքիդ է ընկնում պատին փակցրած հայտարարությունը։

*Այսօր, ժամը 1-ին, № 5 սենյակում, կայանալու է ֆորպոստի ժողով: Պիոներների ներկայությունը պարտադիր է։ Ցանկալի է նույնպես աշակերտների ներկայությունը։*

**Ֆորպոստի բյուրո**

Միայն դու չես, վոր ուզում ես ժողովին չմնալ։ Ի՞նչ անել, ինչպես խուսափել։ Դիմում ես խորամանկության։ Ծածուկ հանում ես վզկապդ և դնում գրպանդ։ Հետո, հանգիստ կերպով դիմում ես դեպի դուռը։ Բայց դռան մոտ կանգնած է ֆորպոստի քարտուղարը և... արդեն № 5 սենյակումն ես։ Անիծելով քո պիոներական բախտը, ընտրված ես լսել մի յերկար ճառ, ֆորպոստի տարած աշխատանքների մասին։ Բայց վոչ վոք չի լսում զեկուցումը և բոլորը ձանձրույթից գլուխներն են քորում։

Յերկու ժամից հետո, թմրած գլխով տուն ես գնում և սկսում ես դասերդ «սերտել»։

Այսպես է գրում մեր պատկորներից մեկը։ Այս փաստի առաջ պետք է մտածել։ Յեթե պիոները փախչում է ֆորպոստից, և վզկապը գրպանումն է պահում, ել ինչպես պետք է վարվին անկազմակերպ պատանիները։ Դասարանում յերկար նստելուց հետո ուզում ես թարմանալ, իսկ ֆորպոստի հայտարարությունը, դարձյալ քեզ ներս է կանչում, յերկու ժամ տևող ձանձրալի զեկուցումը լսելու համար։ Ֆորպոստի աշխատանքը անհետաքրքիր է վերոհիշյալ պատկորի համար, և զարմանալի չէ, վոր նա փախչում է դրանից։

Ահա մի ուրիշ թղթակցություն ուղարկված Ղարաքիլիսայից, պատկոր Պետրոսյանի կողմից, «Մեր ֆորպոստը վոչ մի աշխատանք չի տանում, չունի վոչ մի ազդեցություն պիոներների և վոչ պիոներ աշակերտների շրջանում։ Դպրոցին հարկավոր է գործունյա, աշակերտության մեջ հեղինակություն ունեցող ֆորպոստ և վոչ թե այդպիսին»։

Այս շատ ճիշտ է, յեթե ֆորպոստ ենք կազմակերպում, կազմակերպենք այնպիսին, վոր «հեղինակություն ունենա»։

Մի ուրիշ պատկոր Լենինականից գրում է. «Մեր ֆորպոստը համախմբում է 80 պիոներների։ Բայց թե ֆորպոստը և թե պիոներները անուշադիր են դեպի դպրոցական աշխատանքները. Պիոներներից շատերն ուշանում են դասերից, խանգարում են պարապմունքները, չեն մասնակցում ակումբային աշխատանքներին. մինչդեռ նրանք ամենից ավելի որինակելի աշակերտներ պիտի լինեն»։

Բայց այս բոլորին զուգընթաց, առաջ է գնում նաև իսկական գործը։ Կամաց-կամաց հարթվում են դժվարությունները։ Պատահել է, յերբ ֆորպոստը յերկար ժամանակ միայն թղթի վրա է գոյություն ունեցել, բայց հետո ճարվել են յեռանդուն պիոներներ, վորոնք համախմբել են ֆորպոստի շուրջը բոլոր պիոներներին, աշկոմի և ուսուցչության հետ միասին լծվել են նոր դպրոցի կառուցման գործին ու անկազմակերպ պատանիներին քաշել են կազմակերպության շարքերը։

Ահա որինակներ, վորոնք նույնպես վերցնում ենք թղթակցություններից։

«Մեր ֆորպոստի աշխատանքները արդեն կանոնավորվել են,— գրում է մեր պատկորներից Ն. Սուրենը — Պիոներները հետաքրքրվում են և մասնակցում ֆորպոստի աշխատանքներին։

Կազմակերպված բոլոր խմբակներում աշխատում են աշակերտները և մասնակցում են ֆորպոստի ժողովներին. միացյալ ժողովներում կարդում են զեկուցումներ և այլն։ Բայց մենք միայն խմբակային աշխատանք չենք կատարում, աշակերտների համար կազմակերպում ենք զանազան խաղեր և ժամանցներ. այս ճանապարհով ավելի շատ պատանեկություն ենք համախմբում մեր շուրջը»։

Մի ուրիշ որինակ Յերևանից. պատկոր Մարլենյան գրում է — «Մեր խմբի աշակերտների 29%-ը դասերից հետ եր մնում, լավ չեր սովորում։ Խմբի աշակերտները վորոշեցին թույլ աշակերտներից խմբակներ կազմել և հանձնարարել ուժեղ աշակերտներին, վորպեսզի նրանց հետ պարապեն։ Համառ աշխատանքի շնորհիվ, յերկու ամիս անց, ներկայումս հետ մնացող աշակերտների թիվը իջավ 4%-ի։ Այս տեսնելով վոչ պիոներները, սկսեցին ավելի համակրանքով վերաբերվել դեպի մեզ։ Մեր աշխատանքի շնորհիվ թեթևացավ նաև ուսուցիչների աշխատանքը»։

Ահա մեր փորձը՝ ֆորպոստի աշխատանքների ասպարեզում, վորը քաղում ենք մեր ձեռքի տակ յեղած անցյալ տարվա թղթակցություններից։

Սկսվել են դպրոցական պարապմունքները։ Քննության առնենք անցյալ տարվա մեր դպրոցական աշխատանքների թերությունները, վորպեսզի այս տարի չըկրկնենք։ Պիոներները դպրոցում լավ ընկերներ պետք է լինեն։ Հասարակական ոգտակար աշխատանքներ կազմակերպելու գործում ամենաառաջին նախաձեռնողները նրանք պիտի լինեն.— լինի դա պատի լրագիր, եքսկուրսիաներ, խաղեր, կամպանիաներ ու զանազան հավաքույթների կազմակերպելը և այլն։

Հարկավոր է միայն, վոր դպրոցի պիոներական աշխատանքը համաձայնեցված լինի կոլլեկտիվի ու դպրոցական ինքնավարության աշխատանքների հետ։ Դպրոցի և պիոներական կազմակերպության մեջ փոխադարձ կապ պիտի լինի և վոչ թե անջատ աշխատանք։



# ՓՈՍՏԱՏԱՐ ԱՂԱՎՆԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ



**Փոստատար աղավնիների պատմությունից**

Փոստատար աղավնիների պատմությունը սկսվում է հին Եգիպտոսից։ Այնտեղ գոյություն ունեին բազմաթիվ աշտարակներ, որտեղ պահում էին փոստատար աղավնիներ և նրանց միջոցով կապ հաստատում Յեվրոպայի շատ քաղաքների հետ։

Հնում, Պարսկաստանը նույնպես ծածկված էր փոստատար աղավնիների կայանների ցանցով։ Հին Հռոմում փոստատար աղավնիների ամեն մի կայանում հաշվվում էին մինչև 5000 աղավնիներ

Գերմանիայում պատերազմից առաջ 200 ընկերություններ կային և ունեին 100 հազար աղավնիներ։

Ներկայումս դժվար է գտնել որևէ յերկիր, որտեղ գոյություն չունենան փոստատար աղավնիների ընկերություններ, տասնյակ հազարավոր աղավնիներով։

**Կարիք կա՞ փոստատար աղավնու.**

Գուցե դուք ասեք՝ ինչ կարիք կա գլուխ ցավացնել, զբաղվել այդքան մանր խնդիրով, յերբ գոյություն ունի հեռախոս, հեռագիր, ռադիո, որոնցով կարելի յե կապ հաստատել ամենահեռավոր վայրերի միջև։

Բայց բանը նրանումն է, որ լինում են դեպքեր, յերբ այդ միջոցները միշտ հնարավոր չի գործածել։

Օրինակ՝ համաշխարհային պատերազմը ցույց տվեց, որ փոստատար աղավնիները կապի տեսակետից, կարող են հսկայական օգնություն ցույց տալ բանակին։ Պատմում են, որ չնայած թնդանոթային կրակին, ծխին, փոշուն, մթությանը, աղավնիները կարողացել են շատ արագ տեղեկություններ հասցնել դիրքերում կռվող զորամասերին։ Պատահել է նույնիսկ, որ աղավնիները հասել են իրենց բները գլխից կամ ոտից վիրավոր։ Միայն պատերազմի ժամանակ չէ, որ կարելի յե աղավնուն օգտագործել։ Բացի դրանից, դեռ հեռագիրը, հեռախոսն ու ռադիոն այնքան չեն տարածվել որպես զի նրանց միջոցով ամեն մի գյուղ կապվի մի ուրիշ գյուղի կամ քաղաքի հետ։

**Ինչ առանձնահատկություններ ունի փոստատար աղավնին**

Յերկար ժամանակ մարդիկ զբաղվելով փոստատար աղավնիներով, կարողացել են ստանալ առանձին տեսակներ, որոշ հատկություններով։

Փոստատար աղավնին պետք է ունենա յերկար վիզ, լայն կուրծք, յերկար փետուրներ և ուժեղ մկաններով թևեր։ Մի խոսքով նա պետք է ուժեղ լինի արագ և յերկար թռչելու ընդունակությամբ, լավ տեսողությամբ ու հիշողությամբ և որ գլխավորն է, կապված լինի իր բնի հետ։

Այդ հատկությունները հնարավորություն են տալիս փոստատար աղավնուն՝ տասնյակ հազարավոր վերստեր կապել։

**Ինչքան կարող է թռչել փոստատար աղավնին**

Փոստատար աղավնին կարող է միջին հաշվով մեկ ժամում թռչել 60—70 կիլոմետր, 100—130 մետր բարձրության վրա։ Իսկ լավ յեղանակներին ավելի յերկար և բարձր կարող է թռչել։

Ցածր թռչող աղավնիներից շատերը ճանապարհին վոչնչանում են փոթորիկից, գիշերային թռչուններից։ Մինչդեռ բարձր թռչողները վերադառնում են նույնիսկ 800 կիլոմետր տարածություն կտրելուց հետո։

Յեթե փոստատար աղավնու վրա փոքր ժամանակվանից խնամք տարվի, նա կարող է 8—10 տարի ծառայել մեզ, տալով տարեկան 6—8 զույգ ձագ։

**Ինչպես խնամել յեվ սովորեցնել փոստատար աղավնիներին**

Փոստատար աղավնիներին պետք է լավ խնամել։



**Աղավնի չեն թռցնում**

Բունը հարկավոր է պատրաստել այնպիսի բարձր տեղում, ուր շարժում ու աղմուկ քիչ կա և մութ ու խոնավ չի։ Այդպես աղավնիները կարող են շուտով հիվանդանալ և սատկել։



Աղավնիներին կերակրում է

Աղավնիների կերը դժվար չի ձեռք բերել։ Նրանք կերակրվում են վորդերով, սերմերով և այլն։ Սակայն պետք է նրանց վորոշ չափով գարի, ցորեն կամ մաքրած ցորենի մնացորդ տալ։ Իսկ խմելու ջուրը պետք է շուտ—շուտ փոխել և հարկավոր է հետևել, վորպեսզի նա մաքուր լինի։ Աղավնիներին ամենից առաջ պետք է ընտելացնել տեղի հետ։ Յերբ նրանք ձագեր են հանում, շատ են կապված լինում իրենց բնի հետ։ Դրանից ոգտվելով, հարկավոր է դնել աղավնուն վանդակի կամ կողովի մեջ տանել մի քանի վերստ հեռու և բաց թողնել։ Այդ ժամանակ նա իր բունը կվերադառնա։ Յերբ առաջին փորձն հաջող անցավ, կարելի յե նրան ավելի հեռուն տանել (մոտ 10 վերստ) և դարձյալ բաց թողնել։ Այդպիսով նա կամաց-կամաց կվարժվի ամենահեռու տեղեր թռչել և վերադառնալ իր բունը։

Աղավնուն բաց թողնելիս, հարկավոր է տալ միայն ջուր։ Շատերը, վորպեսզի կարողանան նամակ ուղարկել և ստանալ, այնպես են անում, վոր նամակագրական կապով կապվող վայրերից մեկում աղավնին ձագ հանի, մյուսում կերակրվի։ Այդպիսով կապը լինում է ավելի ուժեղ։

Աղավնու միջոցով ուղարկվելիք նամակները պետք է գրել նեղ, յերկար թղթի վրա։ Գրելուց հետո վոլորում են և մտցնում սագի հաստ փետուրի արանքում և ծայրերը փակում են։ Փետուրը թելով կապում են աղավնու վոտից։

Պիոներական կոլլեկտիվներին մեծ ոգուտ կարող են տալ փոստատար աղավնիները։

Պիոներական կոլլեկտիվը մի քանի զույգ փոստատար աղավնիներ պահելով, հնարավորություն կունենա ուժեղացնելու իր նամակագրական կապը գավառային կամ շրջանային բյուրոների, հարևան գյուղերի ու քաղաքների պիոներական կոլլեկտիվների հետ։

Բացի այդ, պիոներները կծանոթանան փոստատար աղավնիների սովորությունների ու կյանքի հետ։

Լավ կլիներ, վոր պիոներական կոլլեկտիվները մտածեյին այս մասին։

Ս. Մ.

Ա. ԹԻԿ

## ՅԵԹԵ ՈՒԶՈՒՄ ԵՍ…

Յեթե ուզում ես
լինել պիոներ,
ճանաչիր որենք,
կարգ, կանոնը մեր։

Ճանաչիր հարգը
կարմիր դրոշի,
լավ բանը վատից
դու միշտ վորոշի.

Զունենաս յերբեք
վատ սովորություն,
չխմես գինի,
չծխես թութուն։

Ամեն որ սառը
ջրով լվացվի,
արևի դիմաց
ծաղկի պես բացվի։

Ձեռքերըդ մաքուր,
ատամներդ սպիտակ,
քայլվածքըդ ամուր,
իրանըդ շիտակ։

Յեղիր վայելուչ,
քաղաքավարի
ու դրա հետ էլ
նոր բան սովորի։

Արհեստ ու արվեստ
գիտություն ձեռք բեր,
մի լինիր պասսիվ,
բնած, անտարբեր։

Տանը, դպրոցում,
յագերում նույնպես՝
որինակելի
յեղիր մշտապես։





# ԹԵ ՎՈՆՑ ԴՊՐՈՑ ԳՆԱՑԻ

* * *

Ինը տարեկան էի, հայրս ինձ դարձրեց գյուղի դառնարած։

Առավոտը ծեգը-ծեգին վեր էի կենում, գյուղի դառներն առաջ տալի, քշում մոտիկ սարը։

Խելոք դառներս մուշ-մուշ արածում էյին, իսկ յես շվի էի փչում ու հետն էլ խաղ ասում։

Եսպես անցավ մի 2 տարի։

Մի օր էլ մայրս հորս ասաց.

— Ա՜յ մարդ ես մեր տղեն բոլա սենց անտեր անտեր մնա, եկուց վեր առ, տար գեղի շկոլը, տուր ենտեղ թող կարդա, սեր սիրտակից ջոկի՝ մարդ դառնա։ Ծոցին մի թիքա հաց կունենա ու մեզ պես հացի կարոտ չի մնա։

Հայրս եստեղ թե՝ հա կնիկ, լավ ես ասում, առավոտը պտի տանեմ, թող երթա մարդ դառնա, ինձ պես ձեռը ծոցին չմնա։

* * *

Առավոտ էր։

Հայրս ինձ զարթեցրեց, յես վեր յելա, իսկույն շորերս հագա, մի թիքա հաց գրի բերանս, շվիս վերցրի և հետևեցի հորս։

Ճանապարհին հայրս ինձ խրատ էր տալիս, յես ուշի-ուշով լսում էի նրան։

Մոտեցանք շկոլին։

— Խելոք կմնաս, տղերքի հետ չես կռվի, դասերդ լավ կսովորես, վոր մարդ դառնաս։

«Վոր մարդ դառնաս» շարունակ կրկնում էր նա ամեն մի խոսքից հետո։

«վոր մարդ դառնաս» մինչև այս օր էլ հնչում է ականջիս հորս այդ խրատը...

* * *

Մինչև այսօր էլ, հիշում եմ այն օրը, թե ինչպես հայրս իր ծանր փափախը ձեռին բռնած, աղերսական հայացքով խնդրում էր պարոն տեսուչից, վոր ինձ տեղ տան, վոր կարդալ, գրել իմանամ, իր պես խեղճ չմնամ։

— Ե՜, — շարունակ ձայնում էր պարոն տեսուչը — վոր տեղ չունենք ի՞նչ անենք։

Հայրս նորից ու նորից խնդրեց։

Այս անգամ տեսուչը նեղացավ։

— Տո հեյ, սարի արջ, բղավեց նա—

— Ի՞նչ ես գլուխ տանում. քեզ ասում ենք, վոր տեղ չունենք հասկացա՞ր։ Սրան մտիկ ե՜, տղին ուզում ա մարդ դարձնի եհ. հե՜յ, համ էլ ձեր տվածն ինչ պիտի լինի շկոլին, շկո՞լն էլ պիտի ապրի թե չէ։

Ու վերջացրեց.—տեղ չկա՝ մեկ, գյուղի ունեորներին չափ չեք կարա տա՝ յերկու։

Հայրս նորից կամեցավ խնդրել, բայց այս անգամ տեսուչը ձայն տվավ ծառային, վոր դա մեզ դուրս գցի։

Հայրս դուրս յեկավ. այդ ժամանակ յես նկատեցի՝ թե ինչպես արցունքի կաթիլները գլորվեցին նրա աչքերից և թաղվեցին նրա միրուքի մազերի մեջ։

Մենք վերադարձանք։

* * *

Այդ օրը յերեկոյան հայրս ու մայրս ինձ վեր կալան, տարան աղա Նիկոլի մոտ, վոր նա միջամտի բալքի ինձ շկոլ վեր կալեն։

— Աղա Նիկոլ, քու բաղդն եմ ընկել, քու երեխեքի բաղդն եմ ընկել—աղաչում էր մայրս—դու ես գործին միջամտես, բալքի տղիս շկոլ վեր կալեն։

— Թող գնա գիր կարդալ սովորի, սեր սիրտակից դառի, հալբաթ մի օր էլ քեզ պետք կգա։ —Վրա յեր բերում հայրս։



**Խելոք դառներս մուշ-մուշ արածում եյին**



— Տո հեյ, սարի արջ—բղավեց նա...

— Ախպեր Բղդե, եդ միտը մի առի—խոսեց աղա Նիկոլը—յերբ ե յեղել, վոր քյասիբի գրագետ տղեն հարուստին օգնի։ Չե էտենց բան չի էլել, մենք եդ գրագետներիցը վախս ունինք։

— Չե, իմ տղեն էնենց հարամ կաթնակերներից չի—արդարացավ հայրս։

— Ե՞, եդ հալալ կաթնակերներին էլ էնք տեսել—վրա բերեց աղա Նիկոլը.—ամա, քեզանից ինչ պահեմ, Բղդե ախպեր, շկոլումը տեղ չկա։ Եդ յես հաստատ գիտեմ։ Մին էլ էն վոնց շկոլ պտի ըլի՞, վոր քյասիբի ու հարուստի տղեն մի տեղ կարդան։ Չե էտենց բան չի ըլիլ, մեր տղերքը կփչանան։ Ախր, Բղդե ախպեր դու վորտեղ, տղիդ շկոլ տալը վորտեղ, ամեն մարդ իր վոտը իր յորղանի գյորա պտի պարզի։

Ասել կուզեմ, վոր եդ շկոլիցը ձեռ քաշի, քյասիբի տղեն փիլիսոփ չի դառնա։ Իմ խրատս քեզ էնա, վոր տղիդ հոտաղ տաս, վոր կամաց-կամաց ռանչպարություն սովորի։

Ռանչպար ծնվել ա ռանչպար էլ պիտի մնա։

Հայրս էլ վոչինչ չխոսեց, նա մի խորը ախ քաշեց, դուրս յեկավ, նրան հետեվեց մայրս։

Ամենից վերջը յես դուրս յեկա. շեմքի վրայից անցնելիս յես հետ նայեցի, աղա Նիկոլը քմծիծաղ էր տալի մեզ վրա։

*
* *

Նորից յես դառնարած էի։

Անգետ, աշխարհից բե խաբար մեծանում էի յես, իմս էն էր շվի փչեյի ու դառներիս հետ վոտի տակ տայի սաղ սարերն ու ձորերը։

Գլորվում եյին որերն ու ամիսները։

Յես արդեն 12 տարեկան եյի։

Մի որ էլ խաբար առանք՝ թե կառավարությունը փոխ ե յեղել, իշխանությունը խլել են բոլշեվիկները։

Թե՝ «էս բոլշեվիկների կառավարությունը քյասիբ քյուսուրի կառավարությունն ա,» ու սենց բաներ։

*
* *

Անցավ մի 2 շաբաթ։

Մի որ էլ տեսանք քաղաքից մի քանի կաշվե պինջակավոր մարդիկ յեկան ու գեղացոց հավաքեցին, սկսեցին զրցել։

— Էս մեր իշխանությունը—տաք-տաք խոսում էր պինջակավորներից մեկը—բանվորի ու գյուղացու իշխանություն ա։ Հմի էլ մեր վզերին լուծ դնող ու մեր արունը ծծող մինիստրներն ու հարուստները փախ են ելել։

Հմի մենք կաշխատենք, կվարենք, կցանենք ու մենք էլ կվայելենք։

Էն գեղի հաստափոր աղեքը ձեր արունը ծծել են, ձեր հողն ու մուլքը ձեր ձեռից խլել են, իրենց վրդներն են հաստացրել։

Հմի մեր իշխանությունը ձեր հողերը հետ ա առնելու, վոր տա ձեզ, վոր հավասար աշխատեք ու հավասար ուտեք։

Գյուղացիք իրար անցան։

— Հընգեր,—խոսեց Կարապետ բիձեն—էս դու հեքիաթ էս պատմում։



—Էս մեր իշխանությունը բանվորի ու գյուղացու իշխանություն ա



**Գյուղացիները նրա հետեվից քմծիծաղ էյին տալիս**

— Հերաթ չի,— վրա տվին մի քանի կաշվե պինջակավորներ։

— Ախպեր, նորից խոսեց Կարապետ բիձեն— ես յաշին մարդ եմ դառել, ամա սենց բան չեմ տեսել։

— Կտեսնես, կտեսնես հայրիկ ջան։

— Հընգեր—ձայն վերցրեց հայրս— ես շկոլի բանը վ՞նցա ըլելու, թե ես կառավարությենը մերնա, մեր դարդ ու ցավին դարման անող ա, պտի շկոլի գործն էլ գլուխ բերի, վոր մեր տղերքը գնան կարդան, մարդ դառնան։

— Հա, հա— ձայն տվին գյուղացիները այս ու այն կողմից— Բդեն դուգա ասում, գյուղին շկոլ ա պետք։

— Հա՛, էդ շկոլի բանը հեշտ ա, լավ եք միտս գըցեցիք։ Մեր իշխանությունը գյուղերում շկոլ պտի բաց անի, վոր ռանչպար գեղցու տղեն գնա կարթա, վոր իմանա աշխարհի լավն ու վատը, խերն ու շառը, պտի գյուղը լուսավորվի։

Պինջակավորը դեռ չէր վերջացրել, մին էլ տեսար գյուղացիքը մի լավ ուռա կանչեցին, ծափ տվին և ուրախացան։

Եսպես մինչև ուշ գիշեր մեր գեղացիք անուշ-անուշ խոսում էյին կաշվե պինջակավորների հետ ու իրենց դարդ ու ցավից խաբար տալի։

*
* *

Էդ տարին մեր գեղի շկոլը կարգի գցեցին։

Ուսումնական տարին սկսվել էր։

Հավաքվեցին ռանչպար գեղացիք չերեխեքի ձեռները բռնած ու անուշ-անուշ մասլահաթին անում, ըսպասում էյին դավթարի ընթերցմանը։

Այստեղ էր աղա Նիկոլը. Նա իր տղի ձեռը բռնած գլխոր կանգնել էր հեռու պատի տակ։

Կամաց-կամաց ռանչպարները մոտեցան նրան։

— Աղա Նիկոլ, քեփդ խի՞մ խարաբ, խի չես գլխոր ընկե՞լ—հարցրեց գյուղացիներից մեկը։

— Ե՛, ինչ կա վոր, վոչ դարդ ունիք վոչ խասաֆաթ, մի դուք արեք իմ սրտից հարցրեք։

— Հորդ օղորմի, քեզ ի՞նչ է եղել վոր, մտածում ես մի թիքա փորահաց չկարաս ճարի...

— Չե ջանմ յես ուրիշ...

Շկոլի նոր տեսուչը դուրս յեկավ դավթարը ձեռին։

Գյուղացիները լռեցին։

Տեսուչը կարդում էր շկոլ ընդունվող երեխեքի անունները։

Բոլորն էլ ռանչպարների երեխեք են։

Աղա Նիկոլի տղի անունը կորել էր։

Յերբ տեսուչը վերջացրեց, աղա Նիկոլը խեղճ-խեղճ մոտեցավ նրան՝ տղի ձեռիցը բռնած։

— Հընգեր տեսուչ—ասավ նա— բա ես մեր տղի անունը խի՞ չկա։

— Վորովհետև տեղ չկա և չերկրորդն էլ դեկրետ ա եղել, վոր առաջին հերթին ռանչպար գեղացոց տղերքին ընդունենք, հետո յել, թե տեղ մնա, հարուստների տղերքին։

Հիմա տեղ չունինք, բայց մի 2 շաբաթից հետո դուցե տեղ լինի և դուցե չլինի։ Տեսնենք։

— Էդ դեկրետը ով ա լուս գցե՞լ։

— Էդ դեկրետը բանվոր ու գյուղացու կառավարության դեկրետն ա։

Այստեղ աղա Նիկոլը գլուխը մի քանի անգամ տնգղեց ու հեռացավ։

Գյուղացիները նրա հետեվից քմծիծաղ տվին ու սկսեցին փսփսալ։

Այդ ժամանակ հայրս ամուր սեղմեց իմ ձեռքը։

Հետևյալ օրը յես շկոլ գնացի։

Շկոլի դռան վրա ցուցանակ էր կպցրած ու վրա կարմիր տառերով գրած «ԱՇԽԱՏԱՆՔԻ ԴՊՐՈՑ»...։

**Համո Գասպարյան**

# ԴԵՊԻ ԳՅՈՒՂ



Մենք անցնում եյինք լեռնային կածաններով.

Լուսաբաց եր: Աստղերը հետզհետե կորչում, անհետանում եյին յերկնակամարից:

Արևելքը կարմրում եր, յերբ մենք ճանապարհ ընկանք դեպի Ս. գյուղը:

Քաղաքը չեր յերևում այլևս: Մենք շրջապատված եյինք լեռներով, անցնում եյինք լեռնային կածաններով: Լեռների գագաթները կախված մասերով ծերունու յերեսի կնճիռների եյին նման: Նրանք սպառնալից եյին ու ահարկու...

Մեր առաջից խոսում եր կատաղի Դեբեդը:

Նա հորձանքներ տալով, մռնչալով ու վորոտալով առաջ եր անցնում:

Դեբեդի կատաղի խշխշոցը, լեռների սպառնալից տեսքը, պիոներներին ավելի աշխուժություն ու յեռանդ եյին հաղորդում:

Լուսը կանոնավոր բացվել եր, յերբ մենք թողեցինք լեռնային շավիղներն ու կատաղի Դեբեդը:

Մեր առաջ բացվել եր մի ընդարձակ տարածություն, վորը պատած եր թավիշ կանաչով:

Բավականին հոգնել եյինք, ընդհանուր ցանկությամբ նստեցինք հանգստանալու: Խաղալու տրամադրություն չկար: Կոլվարին խնդրեցինք և նա մի կարմիր հեքիաթ պատմեց:

Հեքիաթը լսելուց հետո շարունակեցինք մեր ճանապարհը: Քիչ անց գյուղն սկսեց յերևալ: Մոտավորապես յերկու և կես վերստի վրա յեր նա:

— Գյուղը յերևում ե: Գյուղը յերևում ե. բացականչում եյինք բոլորս:

Գյուղական տների կտուրներից, ըստ սովորականի, ծուխ եր բարձրանում, վորը մեզ արգելում եր գյուղից են կողմը տեսնել: Գյուղին բավականին մոտեցել եյինք: Արդեն լսելի յեր շների հաջոցն ու կովերի բառաչը: Վոչխարների հոտերը փռվել եյին սարերի լանջերին, յերբ մենք կանգ առանք գյուղի մոտ: Գյուղից լսվեց պիոներական յերգերի ձայն:

Դրանք գյուղի պիոներներն եյին, լսելով մեր գալուստը՝ շտապել եյին դիմավորել մեզ:

Մեր ուրախությունը չափ չկար: Չե՞ վոր հանդիպում եյինք գյուղի մեր ընկերներին: Յերկարատև ուռաների տակ մոտեցանք իրար, ծանոթացանք միմյանց հետ, պատմեցինք մեր աշխատանքների ու նվաճումների մասին:

Լսվեց հրահանգչի ազդանշանը և մենք հավաքվեցինք նրա շուրջը: Հրահանգիչը բացատրեց մեզ թե ինչու գյուղի և քաղաքի պիոներները իրար հետ կապ պիտի հաստատեն, և ինչու այդ կապը վորքան կարելի յե ուժեղ պիտի լինի: Հետո խոսեց գյուղկոլեկտիվի կոլվարը նա վողջունեց մեր գալուստը և պատմեց իրենց կոլեկտիվի աշխատանքների մասին:



Յերկարատև ուռաների տակ մոտեցանք իրար

Այս բոլորը լսեցին նաև մի խումբ գյուղացիներ, վորոնք հավաքվել եյին դաշտերից նկատել ով մեր հավաքույթը:

Արևն արդեն բարձրացել եր և ոդը տաքացել: Մոտի արտից պարզ կերպով լսվում եր մեր գյուղացու մանգաղի զրնգոցը և նրա յերգի ձայնը:

Տրվեց շարքի հրահանգը և մենք յերգով ու թմբուկով գյուղ մտանք:

Պատկեր՝ Լ. Եվարսիմ



Դրոշակը բարձրացնելիս

# ԾԱՂԿԱՁՈՐԻ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՕՐԸ



Ճաշ են սպասում

### Լագերը դեռ քնած է

Վրանների մեջ նիրհում եյին պիոներները, յերեկոյան ճանապարհորդությունից հոգնած, բեզարած։

Պահակները փայտյա նիզակները ձեռներին հսկում եյին վրաններին, չխանգարելով քնածների հանգիստը։

Մոտ հիսուն պիոներներ դըրսում եյին գիշերել՝ յերեկոյան ուշ հասնելու պատճառով։ Նրանց վերմակները թրջվել եյին առավոտյան ցողի կաթիլներից։

«Տնտեսական կոմիսիան» վաղ եր վերկացել։ Նա հաշվի յեր առնում պիոներների քանակը, մըթերքներ բաժանելու համար։ Արևի առաջին ճառագայթների հետ միասին, լագեր եյին գալիս պիոներների նորանոր խմբեր։

Հնչում է քնից արթնանալու ազդանշանը և պիոներները շտապով հագնվում ու դուրս են վազում վրաններից։

### Մարզանք յեվ դրոշակի բարձրացում

Կոլվարների սուլիչները կանչում եյին պիոներներին առավոտյան մարզանքի։ Մարզանքից հետո պիոներները շարքերով շրջապատեցին կարմիր դրոշակի սյունը։ Պիոներներն սկսեցին յերգել «Ինտերնացիոնալ»-ը։ Յերգի հընչյունների տակ դանդաղորեն բարձրանում եր կարմիր դրոշակը։ Յերեք հրացանների համազարկերն ազդարարեցին այդ բոլորին։

— Բանվոր դասակարգի պայքարին, պիոներներ, պատրաստ— լսվեց ղեկավարի ձայնը։

— Միշտ պատրաստ ենք—պատասխանեցին պիոներները հաստատ ու հպարտ։

### «Ճարտարապետն» ու «տեխնիկը» գործի անցան

Ընթրելուց հետո պիոներների մի մասը ցրվեց անտառներում, իսկ մյուս մասը մնաց լագերում աշխատանքի համար։

Լագերի ղեկավարը, «տեխնիկ» «ճարտարապետ» Ամբատի և «տեխնիկ» Մուկուչի հետ կազմեցին լագերի նախագիծը։

Սկսվեց լագերի կառուցման աշխատանքները։ Քառանկյունի դաշտավայրն անխնա փորփրվում եր։ Զանցած մեկ ժամ, 4 ողակային վրաններ արդեն պատրաստ եյին։

Աշխատանքը դժվար եր ու հետաքրքիր։ Գործիքների պակասության պատճառով, հաճախ վեճեր եյին տեղի ունենում պիոներների մեջ, խլխլում եյին մեկը մյուսից գործիքները։

Բայց աշխատանքը առաջ եր գնում։

### Ճաշ

Ճաշի փողը հնչեց։ Ամեն մեկը շտապով իր պայուսակից հանում եր կերակրամանը գդալն ու պա-



Արեվային վաննա



**Ճաշում են**

տառաքաղը և վազում խոհանոց, հերթի սպասում: Իսկ այն ողակները, վորոնց տնտեսավարները դույլեր եյին ճարել, հանգիստ նստած սպասում եյին իրենց տնտեսավարին, կերակրով լի դույլի հետ:

Տրվեց մեկ ժամ հանգիստ, վորից հետո դարձյալ վերսկսվեցին աշխատանքները: Ամեն մի կոլեկտիվ աշխատում եր շուտ վերջացնել վրաններ խփելը, գիշերը դուրսը չմնալու համար: Յերեկոյան ժ. 6-ին, բոլոր վրաններն արդեն պատրաստ եյին:

**Խաղեր յեվ յերեկոյան թեյ**

Ժամը 6 ից սկսվում են խաղերը: Ամեն մի պիոներ աշխատում ե, վոր ինքը խաղի մեջ ճարպիկ լինի: Մի ժամ խաղալուց հետո, պիոներները պատրաստվում են թեյ խմելու. բոլորն ախորժակով թեյում են: Խաղերն ու աշխատանքը բաց են արել բոլորի ախորժակը:

**Զրույց խարույկի շուրջը**

Լագերի կենտրոնում վառվում ե հսկայական խարույկը. Նրա շուրջը բոլորած, խաղում ու յերգում են պիոներները: Այդ միջոցին մեջտեղ ե գալիս լագերի ղեկավարը: Նա համախմբում ե իր շուրջը պիոներներին և իր սովորության համաձայն ձեռքը բարձրացնում ե և բացականչում.

— Ընկերներ, լսեցեք զրույցն սկսվում ե:

Տիրում ե լռություն: Ղեկավարը շարունակում ե.

— Այսորվա զրույցի նյութն ե պիոներական լագերի նպատակները և պիոներների անելիքները լագերում:

Զրույցը հետաքրքրությամբ լսում եյին բոլոր պիոներները: Զրույցից հետո լսվեց—պի-ո-ներներ, հա-վաք-վե-ցեք, դրո-շա-կի ի-ջեց-մա՛ն:

**Դրոշակի իջեցում յեվ քուն**

Զանգած յերեք րոպե բոլոր պիոներները շրջապատել եյին դրոշակը: Ինտերնացիոնալի հնչյունների տակ իջնում եր կարմիր դրոշակը:

Հնչեց քնելու փողը: Պիոներները մտան վրանները և պատրաստվեցին քնելու:

Խարույկը շարունակվում եր վառվել ու լուսավորել իր շուրջը:

Լագերը քնած եր և սպասում յերկրորդ օրվա լուսանալուն:

Պատկոր՝ **Ս. Օգոյան**

# ԳԻՏԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

## ՉԱՅՐՎՈՂ ԹՈՒՂԹ

Վերջերս Ամերիկայում պատրաստել են այնպիսի մի թուղթ, վորը 800° (աստիճան) տաքության մեջ չի այրվում: Այդ թղթի վրա գրում են չայրվող թանաքով: Այդ թանաքը պատրաստում են գլիցերինի և ապակու խառնուրդից:

## ԴՌՆԱՊԱՆՆԵՐԻՆ ՓՈԽԱՐԻՆՈՒՄ Ե ԱՎՏՈՄՈԲԻԼԸ

Գերմանիայում, վերջերս պատրաստել են նոր ձևի ավտոմոբիլներ, վորոնք հաջողությամբ փոխարինում են դռնապաններին:

Ավտոմոբիլի հետևի մասում ամրացված ե հսկա մագնիտ, վորը հավաքում ե փողոցներից մեխեր, մետաղյա լարեր, պտուտակներ, վորոնք թափթփված են լինում փողոցներում և փչացնում են ավտոմոբիլների անիվները:

Ավտոմոբիլի մեջ կան մի քանի ջրի տակառներ, փողոցը ջրելու համար:

Կարիք յեղած դեպքում այս ավտոմոբիլը գործադրում են հրդեհ հանգցնելու համար:

## 15 ՃԱՐՏԱՐԱՊԵՏԸ ՅԵՎ ՆՐԱ ՇՈԳԵՄԵՔԵՆԱՆ

Կալիֆորնիայում (հյուսիսային Ամերիկա) ապրում ե մեքենավար Ֆարլը: Նա 45 տարի աշխատել ե յերկաթուղու վրա: Ֆարլի տղան Ջեկը հաճախ լինում ե շոգեմեքենայի մեջ և օգնում հորը: Ջեկը մտածում ե պատրաստել շոգեմեքենա: Նա օգտագործում ե շոգեմեքենաների մասերը և հոր ցուցմունքներով մի տարի աշխատելուց հետո պատրաստում ե մի փոքրիկ շոգեմեքենա:

ՍՈՂՈՄՈՆ ՏԱՐՈՆՑԻ

## ԱՇՈՒՆ

*Ու մերկ սարերով, ծառերով այգու*
*յեկավ աշունը՝ մի տղա դժգույն,*
*կանգնել է ահա խեղճ, անօգնական,*
*դեղնության ծովը յերեսին պատած։*

*Վերջին թռչունները չվեցին հեռու —*
*ճերմակ արագիլ, սարյակ ու կռունկ…*
*իսկ ծիտը տխուր վշտով անլեզու,*
*բույն է հաստատում տաք ծխնելույզում։*

*Գյուղի բուխարին պատի մեջ բացված,*
*շողքեր կթափի գյուղացու դեմքին,*
*ինչպես փողփողուն արշալույսը վառ,*
*իր փայլն է փռում գորշ լեռան վրա։*

*Մեր յերկիրը՝ շեն, մենք ուրախ ենք, գոհ.*
*սրտերով խնդուն ու զվարթ հոգով,*
*կարդում, սովորում և պայքարում ենք,*
*մենք բացված կարմիր, կրակե վարդեր։*

*Յեվ մոռանում ենք գալուստը աշնան,*
*շունչը սառնասիրտ ահավոր ձմռան,*
*ու միշտ կանգուն ենք վառ, զվարթերես,*
*տաք յերկրի անուշ գարունների պես։*

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ

(Խմբական արտասանություն)

*ՄԵԿԸ.—Մենք նոր պիոներներ ենք։*
*ՄԻ ԽՈՒՄԲ.—Հազար ու միլյոններ ենք։*
*ՄՅՈՒՍ ԽՈՒՄԲԸ.—Որերի յերգն ենք մենք։*
*ՄԻԱՍԻՆ.—Նոր կյանքի հիմքը։*
*Մեր կարմիր նավի*
*առագաստն ենք մենք,*
*հնի դեմ անսասան—*
*միշտ պատրաստ ենք մենք։*
*ՄԵԿԸ.—Եսոր դեռ փոքր ենք, ու նոր, նոր,*
*ՄԻ ԽՈՒՄԲ.—Բայց եգուց կը դառնանք մենք*
*կոմսոմոլ։*
*ՄԵԿԸ.—Պահում ենք Լենինի պատգամները խիստ։*
*ՄՅՈՒՍԸ.—Վոր հետո դառնանք լավ կոմմունիստ։*
*ՄԻ ԽՈՒՄԲ.—Վոր շինենք մեր աշխարհը,*
*մեր աշխարհը նորից,*
*մինչև Ինտերնացիոնալը*
*աշխարհում տիրի։*
*ՄԻԱՍԻՆ.—Մենք նոր պիոներներ ենք,*
*հազար ու միլլիոններ ենք,*
*հնի դեմ անսասան*
*միշտ պատրաստ ենք մենք։*

---

## ԴԵՊԻ ՂԱՐԱՔԻԼԻՍԱ

(Տպավորություններ եկսկուրսիայից)

* * *

Մենք քսան հոգի եյինք, Տեկստիլ գործարանի պիոներական կոլլեկտիվից։

Քսան թմփան ու կայտառ պիոներներ։

Գիշեր է։ Գնացքը սլանում է մթին դաշտերով։ Վագոնների միալար դղրդյունը և հոգնեցուցիչ ձայնը մեր քունը բերում են։ Նայում ենք լուսամուտներից դուրս Մեղմիկ զեփյուռը շոյում է մեր ծանրացած գլուխները և թարմացնում մեզ։

Գիշերվա խոր լռությունը խախտում էր մեր գնացքը, իր հևոցով և դղրդոցով։

Գնացքի շուրջը ձգվում են լեռների անվերջ շղթաները։ Տեղ տեղ բացվում են գոգաձև սարահարթներ, վորոնց միջով վազում է խոխոջուն գետակը։ Ավելի հեռուն լեռների լանջերը մուգ կապույտին են տալիս։ Դրանք Ղարաքիլիսայի անտառներն են։

* * *

Բացվում է Ղարաքիլիսայի գեղածիծաղ ու հովաշունչ առավոտը։ Անտառի ծառերի կատարները վառվում են արևի ճառագայթներից։

Ղարաքիլիսան պարփակված է չորս կողմից անտառապատ լեռներով։ Նա լեռնահովտի մեջ է գտնվում։

Մենք այցելեցինք Լենինականի տեկստիլ գործարանի Ղարաքիլիսայի բաժանմունքը, ուր և կապ հաստատեցինք տեղի պիոներական կոլլեկտիվի հետ։

Հետո յեղանք հիդրոկայանում։ Նա գտնվում է Ղարաքիլիսայից Դիլիջան տանող ճանապարհին։ Բլրի վրայից գահավիժում է ջրվեժը, վորը շարժողության մեջ է դնում ելեկտրո-կայանի մեքենաները։ Կայանն առայժմ ունի 60 ձիու ուժ, իսկ մոտ ապագայում վերածվելու յե 400 ձիու ուժի։

* * *

Այցելեցինք կարմիր բանակայինների հայկական գնդերի լագերը։ Լագերը մի կատարյալ վրանաքաղաք է, կանոնավոր դասավորված սպիտակ վրաններով։

Մենք գիտեցինք կարմիր բանա-

## ՄԵՆՔ ԱՌԱՋԻՆ ՋՈՐԱԽՈՒՄԲ — WIR SIND DIE ERSTE REINE

(Գերմանական պիոներների երգը)



(Փոխադրություն ռուսերենից)

Մենք առաջին ջորախումբ,
Մենք սերունդ ենք ջահել,
Մենք պատանի գվարդիա
Համարձակ հարվածող։

Մեր ճակատին կա քրտինք,
Մենք սոված ստամոքսով,
Մինչդ պատրաստ ենք մեծ կռվին
Մեր կյանքով ու զենքով։

Դասակարգի մեծ կռվում,
Ցերբ կորչի բուրժուան,
Այդ մեծ օրվա հողմի պես,
Կազատվենք հավիտյան։

Խաղաղության վոչ մի խոսք,
Կանչն և կանչում կռվի,
Ռոզայի, Լիբկնեխտի հետ՝
Կը հարձակվենք արի։

Թող անհող կռիվ լինի,
Կեցցեն խորհուրդները
Առաջ դեպի մեծ կռիվ
Վոր տիրենք աշխարհը։

Բարձրացնում ենք դրոշակ
Առաջ դեպի պայքար.
Դեպի բարրիկադները
Հաղթանակի համար։

Wir sind die erste Reihe
Wir gehen drauf und dran,
Wir sind die junge Garde
Wir greifen, greifen an.

Im Arbeitschweisz die Stirne
Der Magen hungrig leer ja leer,
Die Händ voll Rusz und Schwielen
Umspannen das Gewehr.

So steht die junge Garde
Zum Klassenkampf bereit,
Erst wann die Bürger bluten
Erst dann sind wir befreit.

Kein Wort mehr von verhandeln
Das doch nicht frommen Kann ja Kan̄n
Mit Luxemburg und Liebkneht
Wir greifen, greifen an.

Es lebe Sowiet Russland,
Hört wir marschieren schon
Wir stürmen in dem Zeichen
Der Volker rewolution.

Sprung auf Barrikaden
Heraus zum Bürger Krieg ja Krieg,
Pflanzt auf did Sowietfahne
Zu blutigeren Krieg.

---

կայինների վրանները, Ամենուրեք աչքի յեր խփում որինակելի մաքրություն և կարգապահություն։ Ամեն կողմից կարմիր բանակայինները մեզ հանդիպում եյին սիրալիր ժպիտով։

—Համեցեք, թեյ անուշ արեք։

—Շնորհակալ ենք, պատասխանում եյինք մենք և անցնում առաջ։

Լագերում առանձնապես մեզ համար քանդեցին և բացատրեցին գնդացիրի բոլոր մասերը։

Տեսանք կարմիր բանակայինների լենինյան անկյունը։ Յուրաքանչյուր վաշտ ունի իր պատի լրագիրը։ Կարմիր բանակայիններն առույգ են և ուրախ։

Ամենուրեք նկատվում եր ուրախություն ու յերգ, սպորտային խաղեր ու ռազմական վարժություններ։ Իսկ մի ուրիշ տեղ կարգում են, պարապում։ Մի խոսքով կարմիր բանակում կռփվում են մեր իշխանության պաշտպանները։

* * *

Վերջալույսի ճառագայթները տարածվել եյին վրանների սպիտակ կատարների վրա. մեզ զեփյուռից օրորվում եյին, վրանների մուտքի փեշերը։

Անտառը կրակին եր տալիս։

Կարմիր բանակայինների համար կազմակերպեցինք ներկայացում, վորն անցավ շատ հաջող և լավ տպավորություն թողեց նրանց վրա։

Վերջին օրը յեղանք Ղարաքիլիսայից յերեք վերստի վրա գտնվող Վարդանլու գյուղում, վորտեղից բարձրացանք անտառը։

Մյուս օրը հրաժեշտ տվինք Ղարաքիլիսային, նրա լագերներին, ջրվեժին և կրակին տվող անտառներին...

Պատկոր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ
Լենինական-տեքստիլ գործարան



# ԹԵ ՎՈՆՑ ԼԱԳԵՐ ԳՆԱՑԻՆՔ



1.



2.



3.



4.

1.

*Խորհրդի նիստ կայացավ*
*ծեծում էյին հարցերը։*

2.

*Վորոշված է. գնում ենք,*
*Մնում է, վոր փող ճարենք,*
*«Եկա», «Ցեկա», Լուսժողկոմ,*
*այնտեղից էլ Ֆինժողկոմ։*
*— Մենք ձեր փոխարինողներն ենք,*
*ձեր պահեստն ենք, ձեր սմենան,*
*բանակ դրկեք չաղանանք,*
*արևի տակ սևանանք։*

3

*Ամռն, մեռավ, տղերք ջան,*
*հլա տեսեք դուք սրան,*
*բեռան տակը ճկռել է*
*և քրտինքի մեջ կորել,*
*էլ վերմակ, բարձ ու դոշակ*
*չի թողել իրենց տանը,*
*— Արա, Սուրեն, մահճակալդ*
*մոռացել ես չես բերել։*

4

*Ուր վոր գնանք, ձեզանից*
*անպակաս են պոչերը*
*խանգարում են ամեն տեղ*
*այդ հոկտեմբերիկները։*
*Բայց ուրիշ ինչ ճար անենք,*
*նրանք էլ մեզ «փոխողն» են*
*և դեռ լագերի ճամբին՝*
*նրանք արդեն «ձիով» են..*

5.

*Անձրև բռնեց ու քամի.*
*յերեկո չեր տեղ հասավ,*
*Սուրիկը վրան խփեց,*
*տակը մնավ—տղերք ջան...*
*Ցտեսություն չըմրսեք,*
*—Սուրիկ լսիր, քնած ես,*
*ախր դու լավ տղա չես...*
*ճանապարհին հիշում ես...*

6.

*Ողակավար Զոկոյին,*
*ոծել էյին խոհարար.*
*մի մեծ շերեփ ձեռքն առած,*
*առավոտից իրիկուն*
*ճաշն եր խառնում բարկացած,*
*համ եր տեսնում ու թքում,*
*քացախ լցնում ձեթի տեղ,*
*իսկ աղի տեղը շաքար։*

7.

*Արևային վաննա—*
*անգործների բանն ա,*
*Աշոտն ու Սպարտակը*
*ուղիղ ութ ու կեսը ժամին,*



5.



6.



7.



8.



9.



10.



11



12.

ընդունում էյին վաննա
սեացել էյին այնքան,
վոր մի բանկա ցինկի յուղ
մրցանակ ստացան։

8.

Լսել էյին «սմիչկա»—
կարծել էյին սեմիչկա
գիշերը մեր Տրոյկնցն ու «պիկորը»,
իբրև քաղաքացիներ
մոտ գյուղերից մեկում
կանաչ բոստաններ հետ
հաստատեցին «սմիչկա»

9.

Ներկայացում տվեցինք,
գյուղացիների համար,
ժամը մեկին գիշերվա
վարագույրը բարձրացավ.
լավ խաղացին դերերը,
ափսոս միայն մարդ չկար,
յեղածներն էլ թարսի պես
կպել էյին ք ն ա ց ա վ։

10.

Տասնեհինգ որն էլ անցավ,
վերջանում եր պաշարը,
— Ճաշ տվեք մեզ, վա՜յ, «մամա»—
մյուսը թե—չես մեռա՜,
Իսկ կոլվարը—ընկերներ,
սոցիալիզմ կառուցողներ,
հանուն մեր այդ մեծ գործի
«ընժիմ էկոնոմիա»...

11.

Գիշերները ամեն որ—
շարվում էյինք դրույցի,
մի գիշեր էլ «Քաջ Նազար»-ը
իր արկածներն եր պատմում.
— Թե ա՜յ եսպես բռնեցի,
գայլին եսպես խեղդեցի—
մյուսներն էլ բերան-բաց
լսում էյին, զարմանում։

12

Մեկ էլ հանկարծ,
մեկը գոռաց գայլն եկավ
մի քանիսը—շուտ տեղից
մեր փայտերով սպանենք...
իսկ «Քաջ Նազարը»—մամա ջան...
վոր գոռաց, շուռ յեկավ,
էլ չիմացան տղերքը,
ուշքը գնաց, թե՞ մեռավ։

13.

Անվեհեր «Քաջ Նազարը»
պաշտպանում եր դրոշակը.
հենց վոր մի ձայն եր լսում,
արթնացնում եր լագերը.
մի որ էլ շատ գոռգռաց,
բայց տեղից չելավ վոչ վոք,



13.



14.



15.

տավռան իմացանք
Ֆիացել եր անդրուշ...

14.

Եսպես ուրախ անցկացավ,
մի ամիսը լագերում,
վերադարձանք շատ ուրախ,
ժիր ու կայտառ չաղացած,
լագեր գնալու ամեն տարի
«միշտ պատրաստ» ենք մենք...

15.

Ու զեկուցեց կոլվարը,
հանդիսավոր իր ճառով,
կատարեցինք ծրագիրը՝
հարյուր հիսուն տոկոսով.
Եսպես լագեր գնացինք,
ախր վո՞ր մեկը պատմեմ
ուրախ տղերք շատ կային,
էլ ոլին կա՞, վոր չարինք։

# ՄԵՐ ԿՅԱՆՔԸ



Լենինականի «ԿՈՄԻՆՏԵՐՆ» կոլլեկտիվի հոկտեմբերիկները

## ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿԻ ՆԱՄԱԿԸ

Անցյալ որը, պատահաբար ձեռքս ընկավ մի նամակ։

Կարդացի. հոկտեմբերիկի նամակ էր։

Ահա, դուք էլ կարդացեք։

«Բարև Սաթիկին և Զավիկին։ Լիզան վոր յեկավ ասաց, վոր դու պիոներ ես, իսկ Զավիկը չէ։ Սաթիկ ջան ջան, Զավիկին ասա, վոր պիոներ լինի։ Թամարը և Լիզան ինձ պիոներական գրքեր են բերում. յես հոկտեմբերիկ եմ, յերբ վոր յես գամ Ղարաքիլիսա, ձեզ պիոներական գրքեր կբերեմ։ Ձեր պարապմունքները ինչպես են լավ են թե վոչ։

Մնամ ձեր նամակին Զավիկ ջան Սաթիկ ջան։ Զավիկ, պիոները լավ բան է, Սաթիկին ասա քեզ պիոներ գրել տա։

Սերյոժա

Օլեր-բասա

## ՀՈՂԱՄԱՍ ՁԵՌՔ ԲԵՐԵՆՔ

Շատ է խոսվել այն մասին, վոր պիոներական կոլլեկտիվները պետք է նաև զբաղվեն գյուղատնտեսական գործնական աշխատանքով։ Ստեղծելով բանջարանոցներ, պահելով ճագարներ, պարապելով թռչնաբուծությամբ և այլն։

Աշխատանքների այս ասպարեզում քիչ գործ ենք կատարել, վորովհետև պիոներական կոլլեկտիվները չեն ունեցել անտեսական միջոցներ և հողամաս։

Այս տարի կատարվելու յե հողաբաժանություն։ Հարկավոր է, վոր հողաբաժանության ժամանակ մեր կոլլեկտիվներն աշխատեն հողամաս ձեռք բերել և զբաղվեն գյուղատնտեսական գործնական աշխատանքով։

Հողամաս ձեռք բերելու համար պիոներական բյուրոները նույնպես պետք է հարց բարձրացնեն հողբաժինների առաջ։

Ն. ՊԱՊԱՅԱՆ

## ՄԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

Լուսաբաց էր։ Գյուղում տիրում էր հովիվների, տավարածների ու անասունների աղմուկը։

Գյուղի կենտրոնում, մի թմբի վրա, հավաքվել եյին մի խումբ պիոներներ։ Նրանք սպասում եյին կոլվարին, վոր հավաքույթն սկսեն։ Սակայն կոլվարն ուշանում էր, չէր յերևում։

Գյուղի մի փողոցից յերևաց կոլվարը։ Նա իր վոտքերը մերկացրել էր մինչև ծնկները, գլուխը բաց էր։ Նրա դեմքը տխրություն էր արտահայտում։

Տեսնելով նրան պիոներների ուրախությունն էլ փոխվեց տխրության։ Ամեն կողմից հարցնում եյին, թե ինչն է տխրության պատճառը. կոլվարը հետևյալը պատմեց.

—Այս գիշեր ջուրը հեղեղել է մեր տունը, լավ կլիներ մեզ ոգնեյիք ջուրը դուրս թափելու համար։

— Տղերք, մարշ դեպի տուն նրանց ոգնելու։

Ջուրը լցվել էր գոմը, պատշգամբը, մառանը։ Սկսեցինք աշխատել։ Պիոներներից ամեն մեկը մի աման վերցնելով, սկսեցին ջուրը դուրս թափել։

— Տղերք, ձեզ մատաղ շուտ արեք ջուրը դուրս թափեք, լսվում էր ամեն կողմից։

Պիոներների ուժեղ մկանները մեկ կծկվում, մեկ բացվում եյին և կոլլեկտիվ աշխատանքը յեռանդուն կերպով առաջ էր գնում։

Ջուրը մաքրված էր։

Տանտիրուհին շնորհակալություն հայտնեց անելով.

Պիոներները մեր բարեկամներն են

Տ. ԳԱԼԵՆ

Ղամարլու- Դարղալու



# ՊԱՅՔԱՐՈՂ ՄԵՐ ՅԵՂԲԱՅՐՆԵՐՆ



Պիոներների ցույց՝ Բեռլինում

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՆԱՄԱԿԸ

*Լենինգրադում կայացած բանվոր եսպերանտական համաշխարհային VI կոնգրեսի գերմանական կոմյերիտմիության և պիոներական կենտբյուրոյի ներկայացուցիչ ընկ. Բարթելմեսը Հայաստանի պիոներներին ուղարկելու համար Բեռլինից բերել է հետևյալ նամակը եսպերանտո լեզվով:*

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԿՏԻՎՆԵՐԻՆ

**ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ**

*Թանկագին ընկերներ — պիոներներ։ Մեր ջերմագին վողջույններն ենք ուղարկում ձեզ, խորհրդային հողի վրա ապրող Թանկագին բարեկամներ, Լենինգրադում տեղի ունեցող եսպերանտո (միջազգային լեզվի) կոնգրեսին մասնակցող մեր կազմակերպության ներկայացուցչի ու ղեկավարի միջոցով։ Մենք շատ անհրաժեշտ ենք համարում ուժեղ, սերտ կապ հաստատել մեր և ձեր միջև. այդ պատճառով մենք շատ ուրախ ենք, վոր մեր ղեկավարը մեկնում է Խորհրդային Միություն և մեզ կը զեկուցի ձեր կյանքի ու գործունեյության մասին։*

*Մեր կազմակերպությունը այնքան մեծ և ուժեղ չի, ինչպես ձերը, սակայն մենք շարունակ աճում ենք և ուժեղ պայքար մըղում դպրոցներում հետադիմական ուսուցիչների դեմ և աշխատում ենք մեր պատանի-սպարտակյաններին կազմակերպության գիրկը քաշել անկուսակցական պատանիներին։*

**Բանվորական գործի պայքարին պատրաստ**

*Պիոներվողջույնով՝ գերմանական պատանի պիոներների անունից՝*

**ՆՈՐԲԵՐՏ ԲԱՐԹԵԼՄԵՍ**

*Բեռլին 2 օգոստոսի*

*Այսպիսով գերմանական պիոներները առաջին քայլն են անում յեղբայրական կապ հաստատելու Հայաստանի պիոներների հետ։ Հայաստանի պիոներները այս նամակին պատասխանելով՝ պիտի ամրացնեն և գործնական հողի վրա դնեն հաստատվող կապը։*

*Ամբողջ աշխարհի աշխատավոր*



Չինական պիոներների յերթը հեղափոխական Չինաստանի մայրաքաղաք Կանտոնում

# ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

[illegible]

### ՆԱՄԱԿԸ

յերիտասարդության կապը ամրացնելու և պահպանելու համար Լենինգրադի եսպերանտիստների կոնգրեսի յերիտ-ֆրակցիան համապատասխան ներկայացուցիչներ ընտրեց այլ և այլ յերկրների համար, վորոնք կոչվում են Junperanto (յունպերանտո)—յերիտ-միջնորդ։

Անդրկովկասյան Յերիտմիջնորդ՝

**Գ. ՍԵՎԱԿ**

## ԻՆՉՈՒ ՅԵՍ «ՊԱՏԱՆԻ ԸՆԿԵՐՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ» ՄԵՋ ՄՏԱ

*(Անգլիական պիոներների պատի մի լրագրից)*

Ընկերներ, ուզում եմ ձեզ պատմել, թե ինչու յես, «պատանի ընկերների միության» անդամ դառա։ Իմ հայրը աշխատում է նավակայանում։ Մեկ անգամ նա ինձ հարցրեց.—ինչ պիտի լինես, յերբ մեծայար։ Յես պատասխանեցի, թե պետք է գործարանատեր լինեմ։ Հայրս ծիծաղեց և ասաց «այդ յերբեք չի լինի, վորովհետև յես բանվոր եմ»։

Այդ ժամանակ յես պատմեցի այն մասին, վոր ուսուցչուհին մի անգամ պատմեց, թե ինչպես յերեխաներն առաջ գրասենյակներում ծառայել են և հետո դառել են գործարանատեր։ Հայրս պատասխանեց, վոր այդ սուտ է, վոր այդպիսի բաներ պատահում են միայն հեքիաթների մեջ։ Նա ասաց, վոր բանվորներն իրենց ամբողջ կյանքում պետք է աշխատեն, վորպեսզի կարողանան իրենց և իրենց յերեխաների գոյությունը պահել։ Նա պատմեց, վոր գործարանատերերը հարստանում, լավ կյանք են վարում բանվորներին շահագործելով։

Նրա պատմածից յես քիչ բան հասկացա, բայց հիմա գիտեմ, վոր բանվորները վատ տներում են ապրում, իսկ գործարանատերերը, նույն բանվորների կառուցած լավ, մեծ ու գեղեցիկ տներում։

Յես ձեզ էլ չեմ պատմի, դուք գիտեք, վոր յերեխաներից շատերը առանց հաց ուտելու, քաղցած գալիս են դպրոց։

Այս բոլորն ինձ ստիպեց «պատանի ընկերների միության» անդամ դառնալ և նոր կյանքի մարտիկը լինել։

Պիոներ՝ **Ա. Բ.**

Անգլիա-Իսլանդ-Բորբույի դպրոց

### ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ԽՍՀՄ-ում

**Մոսկվայի պիոներների հրավերով ԽՍՀՄ էյին յեկել գերմանական պիոներների պատգամավորները ընկ. ընկ. ՎԻԼԼԻ ՀԵՐՐԸ, ԷՐՆՍՏ ՄՅՈՒԼԼԵՐԸ յեվ ՌԻԽԱՐԴ ՎԱԳՆԵՐԸ: Նրանք մոտ մի ամիս մնացին Մոսկվայի պիոներների լագերներում։ Ծանոթացան մեր կյանքի յեվ աշխատանքների հետ յեվ վերադարձան հայրենիք, պատմելու մեր յեղբայրներին մեր աշխատանքի ու պայքարի մասին։**

## ՀԱՐԿԱՎՈՐ Է ԿԱՆՈՆԱՎՈՐԵԼ

Տեքստիլ գործարանի պիոներական կոլեկտիվը իր կազմակերպման օրից (յերկու տարի) ակումբ չունի։

Յեվ այդ ժամանակաշրջանում, ակումբ չունենալով՝ նա չի կարողացել կանոնավոր կազմակերպել իր աշխատանքները։

Միայն վերջերս կոլեկտիվին հաջողվեց ձեռք բերել մի սենյակ։

Սակայն այնտեղ աշխատել հնարավոր չի։ Սենյակի պատուհանները ապակիներ չունեն։ Արդեն ցուրտ է։ Ապակիներ չունեցող սենյակում անհնար է պարապել։ Մանավանդ, յերբ մոտենում է ձմեռը։ Կոմյերիտական բջիջը և պրոֆմիությունը, պետք է հիմիկվանից մտածեն սենյակը կանոնավորելու մասին։

Պիոներ՝ **Ն. Թուխկյան**

Լենինական

## ԻՆՉ ԳՐԱԾ Է ՉԵՆ ԿԱՏԱՐՈՒՄ ՅԵՎ ՀԻՎԱՆԴԱՆՈՒՄ ԵՆ

«Պիոներ» հանդեսում, «Ավանգարդ»-ում միշտ գրվել է, վոր պիոները մաքուր, սառը ջրով իր մարմինը շփի, թարմ օդի մեջ մարզանք կատարի և այլն։

Սակայն Թալինի պիոներները հակառակն են անում։

Յերբ ճաշին տավարն ու վոչխարը բերում են գետակը ջրելու, ջուրն սկսվում է կեղտոտվել և այդ կեղտոտ ջրում սկսում են լողանալ։ Լողանալիս տավարի ու վոչխարների կեղտոտությունները լցվում են պիոներների բերանն ու ականջը։

Յերբ ջրից դուրս են գալիս, նրանք սկսում են գանգատվել. մեկն ասում է ականջս է ցավում, մյուսը թե մարմինը թույլ է։ Այսպիսով պիոներներն սկսում են հիվանդանալ։

**Գ. ԲՐՈՆՁՅԱՆ**

Լենինական—Թալին

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՆԱՄԱԿԸ ԸՆԿ. ԲՈՒԴՅՈՆՈՒՆ

Գերմանիայի պիոներական մի խումբ՝ հետևյալ նամակն է գրել Խորհրդային Միության հեծելազորի պետ՝ ընկ. Բուդյոննուն։

**«Թանգագին ընկ. Բուդյոննի**

Մենք ՄՈՊՐ-ի մանկատան պիոներներս, ուղարկում ենք մեր մարտական վողջույնները քեզ։ Մենք շատ ենք հետաքրքրվում քեզանով։ Մենք ունենք Բուդյոննու անվան ակումբ և սենյակ։ Մենք գլխավորապես ,,Բուդյոննի'' և ,,Վրանգել'' խաղն ենք խաղում։ Այդ խաղում միշտ տանում են Բուդյոննու ձիավոր մարտիկները։ Շատ ենք սիրում յերգել Բուդյոննու քայլերգը։ Վերջերս մենք դիտեցինք «Կարմիր սատանի ճուտեր» կինո-նկարը։ Մեր ուրախությանը չափ չկար, յերբ տեսանք քեզ զինվորական տարազով։ Յեթե Գերմանիայում մի քանի քեզ նման մարտիկներ լինեյին, շուտով Գերմանիան կարմիր կդառնար։

Միշտ պատրաստ ենք։

**Մոպր-ի տան պիոներների** հանձնարարությամբ՝ Ալգուս Մյուլլեր Բուրի շրջանի Բուդյոննու հեծելազորի կարմիր գեներալ (13 տարեկան)։

## ՇԵՖԵՐԸ ԼԱՎ ԵՆ ԱՇԽԱՏՈՒՄ

Գյուղաքլու գյուղի պիոներական կոլեկտիվը կապ է հաստատել «Արարատ» գործարանի պիոներական կոլեկտիվների հետ։ Ըսկզբում այդ կապը գրավոր էր, շատ չանցած դարձավ կենդանի։

Մեր շեֆկոլեկտիվները հաճախակի գալիս են մեզ մոտ, կազմակերպում մեզ համար զրույցներ, զանազան խաղեր և այլն։

Վերջին անգամ, յերբ նրանք յեկան գյուղ, իրենց հետ մեզ բերել եյին 21 կտոր գիրք և մի պատի լրագիր, վորպես նվեր։

Շնորհակալություն մեր շեֆին։

**Ս. ՔԱՌԱՍՅԱՆ**

Գյուղաքլու—Յերևան



**Մի քանի քայլ հեռու գնացեք յեվ նայեցեք այս նկարին, ինչ՞ եք տեսնում։**

### Ի՞ՆՉՊԵՍ ԿՏՐԵԼ ՈՒՂԻՂ ՀԻՆԳԹԵՎԱՆԻ ԱՍՏՂ

Յերկրաչափական ձևով հինգթևանի աստղ գծելը, բավականին ժամանակ խլող աշխատանք է։

Սակայն կարելի յե առանց դժվարությունների պատրաստել ուղիղ հինգթևանի աստղ զանազան մեծության։



Վերցրեք թղթի քառակուսի մի թերթիկ և ծալեցեք մեջտեղից (նկ. 1). հետո ծալեցեք թղթի մի ծայրը մյուսի վրա այնպես, որ մնացած ծայրերն իրար վրա բերելիս (նկ. 2 և 3) cb և cd գծերը իրար համընկնեյին։ Այդպիսով կստանանք նկ. 4։ Հիմի հարկավոր է կտրել թղթի ծայրը ցույց տված ուղղությամբ և կստանաք ուղիղ հինգթևանի աստղ։

### ԱՍԵՂՈՎ ՓՈՐՁ

Վերցրեք մի բաժակ ջուր և փորձեցեք շատ զգուշությամբ ջրի մակերեսի վրա դնել ասեղն այնպես, որ նա չընկղմի։ Այս փորձը ձեզ մեկից չի հաջողվի, բավական աշխատանք է պետք։ Ի՞նչով բացատրել, որ ասեղը չի ընկղմում։ Մտածեցեք այդ մասին և պատասխանն ուղարկեցեք խմբագրությանը։

### ԻՆՉՊԵՍ ԳՏՆԵԼ ՄՏՔՈՒՄ ՊԱՀԱԾ ԹԻՎԸ

Առաջարկիր ընկերներիցդ մեկին տվյալ աղյուսակի թվերից մեկը մտքումը պահել։ Հետո, առանց նայելու աղյուսակին հարցրու թե, որ շարքումն է գտնվում (հաշվելով ձախից աջ) այդ թիվը։ Նա քեզ կասի։

Այդ թիվը գտնելու համար մտքումդ պետք է պինդ հիշես հետևյալ թվերը. 8. 4. 2. 1 (այսինքն բոլոր թվերը 8-ից հետո, վորոնք յերկու անգամ փոքր են նախորդից)։ Յեթե քեզ ասում են, որ մտքում պահած թիվը գտնվում է 2-րդ և 4-րդ շարքում, այդ ժամանակ դու պիտի գումարես յերկրորդ և չորրորդ (4+1) թիվը. կստանաս 5։ Յեվ այդ կլինի մտքումը պահած թիվը։ Այսպիսով առանց նայելու աղյուսակին միշտ կարող ես թվերը գտնել։

Օրինակ. Մտքում պահված է 8 բացի առաջին շարքից, աղյուսակում վոչ մի տեղ չկա։ Վերցնում ենք չորս թվերից (8. 4 2. 1) առաջինը—8-ը։

Մտքում պահված է 15։ Նա գտնըվում է բոլոր շարքերում։ Գումարում ենք բոլոր չորս թվերը (8+4+2+1), ստանում ենք մտքում պահած թիվը —15-ը։

Վորպեսզի ընկերդ աղյուսակին նայելով չկարդա վերոյիշյալը լավ կլինի աղյուսակն արտագրես առանձին թղթի վրա։

| | | | |
|---|---|---|---|
| 10 | 5 | 6 | 3 |
| 12 | 14 | 10 | 7 |
| 8 | 6 | 15 | 11 |
| 15 | 13 | 2 | 15 |
| 14 | 15 | 14 | 5 |
| 11 | 4 | 7 | 1 |
| 13 | 12 | 11 | 13 |
| 9 | 7 | 3 | 9 |

### ԳՆԴԻԿԸ

Մեղրամոմից կամ հացի խմորից պատրաստեցեք մի գնդիկ և հետևյալ փորձը կատարեցեք։ Դասավորեք մատներդ այնպես, ինչպես ցույց է տալիս նկարը և փորձեք գլորել գնդիկը։ Դուք այն տպավորությունը կստանաք, վոր իբր թե ձեր մատների տակ յերկու գնդիկ է գլորվում։



Ի՞նչ եք մտածում, ի
պատճառը։

### ՏԵՍԱԽԱԲՈՒԹՅ

(Պերելմանի գր

Յերկու սպիտակ գծե
անցնում են աջից ձախ կ



ինչպես յերևում է առաջին
Նրանք ուղիղ գծեր են։

### ԲԱԺԱԿԻՑ ՋՈՒՐ

Վերցրեք մի բաժակ, լց
ջուր և նա ծածկեցեք մի ու
(ինչպես ցույց է տալիս




Հետո փորձեք ձեռքերով
բաժակին խմել ջուրը։
Թե ինչպես անել այդ ցո
լիս 2-րդ նկարը։

# ՇԱՐԺԻՐ ՈՒՂԵՂԴ!



ՌԵԲՈՒՍ № 11



ՌԵԲՈՒՍ № 12

### ԽՆԴԻՐ № 4

Լուցկիներից պատրաստեցեք այս ձևը։ Հետո չորս լուցկին այնպես դասավորեցեք, որ ստացվի յերեք քառակուսի։

### ԽՆԴԻՐ № 5

Չորս լուցկիներն այնպես դասավորեք, որ ստացվի յերեք քառակուսի։

### ԽՆԴԻՐ № 6

Գրաշարը շարում եր մի հոդված. շարելու ժամանակ՝ շարվածքից մի բառ թափվեց։ Գրաշարն առանց նայելու տառերին, հավաքեց և դրեց իր տեղը և, ստացվեց հետևյալ բառը։

### ՈՐՍԱՑԻԵԳՈԿԱ.

Արդյոք չե՞ք կարող գտնել թե ինչ բառ է յեղել։

### ԽՆԴԻՐ № 7

(Սամվել Ամիրբեկյան)

| | | | |
|---|---|---|---|
| | վ | ա | |
| ա | ր | կ | ր |
| գ | ա | ա | մ |
| ա | գ | | ն |

Այս քառակուսիների տառերն այնպես դասավորել, որ ստացվի ժողովրդական մի առակ, հինգ բառից կազմված



ՌԵԲՈՒԿ № 13

### ՈՒՂՂԵՑԵՔ

Յերես 11, սյուն 2, տող 14 տպված է ասեք պետք է լինի ատեք։

### ՀԱՆԵԼՈՒԿ № 1

Վառվում է, բայց չի այրվում։

Խմբագրություն ՇԱՀԳՅԱԼԴՅԱՆ Ա., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Լ., ՄՈՒՇԵՂՅԱՆ Տ, ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ա., ԴԱԲԱՂՅԱՆ Ն,
Պատասխանատու խմբագիր՝ Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Խմբ. քարտուղար՝ Հ. ՄԻՐԶԱՅԱՆ

Յերեսները կազմեց՝ Ռ. ՆՇԱՆՅԱՆ, Տպագրությունը ղեկավարությամբ Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆԻ, Բրոշյուրավկան ղեկավարությամբ՝ Հ. ՍԱՐԳՍՅԱՆԻ, Ծափիկը՝ ՀՌՈՅԻ:

Գրառեպվար № 802 (բ) Պետհրատի յերկրորդ տպարան, Պատվեր № 1171.